# ՄԱՅԻՍԻ 19-Ը ՊԻՈՆԵՐԻԱՅԻ ԾՆՆԴՅԱՆ ՕՐՆ Է



Լուսանկարը՝ ԴԱՎԻԹ ՆԵՐՍԻՍՅԱՆԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԵՐԻՏՄԻՈՒԹՅԱՆ 60-ԱՄՅԱԿԻՆ ԸՆԴԱՌԱՋ

# ԴՐՎԱԳՆԵՐ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ՀԵՐՈՍ, ՕԴԱՉՈՒ ՍԵՐԳԵՅ ԲՈՒՌՆԱԶՅԱՆԻ ՊԱՏԱՆԵԿՈՒԹՅՈՒՆԻՑ



*ԹՈՐԳՈՄ ԳԵՎՈՐԳՅԱՆ*

Սերգեյ Բուռնազյանի հայրը՝ Ավետիս Բուռնազյանը, իր ծննդավայր Արևմտահայաստանի Խոտորջուր գավառակում ճանաչված, հարգելի անձնավորություն էր: Բուռնազյանները նահապետական նշանավոր, մեծ ընտանիք էին, իսկ Ավետիսը առաջադեմ, հասարակական գործչի համբավ էր վայելում: Ես լավ հիշում եմ նրա ակտիվ, եռանդուն գործունեությունը նոր Խոտորջրում կազմակերպվող թատերասերների ընկերության, կոոպերացիայի, հիդրոէլեկտրակայան կառուցելու մեջ, բայց առավելապես՝ «Մի ՏԸԽԻՐ ԵՎ ՄԻ ԽՄԻՐ» պատանի-երիտասարդական ընկերության մեջ, որը անմիջապես վերաբերում էր մեզ՝ աշակերտներիս:

Եղեռնից հետո մեկ էլ ես Ավետիսին հանդիպեցի 1931 թ. Կիսլովոդսկում: Սրտագին ողջագուրումներից հետո մինչև սեզոնի վերջը անբաժան էինք: Իմացա, որ ապրում է Սալսկում՝ Ռոստովի մոտ: Հպարտությամբ ընդգծեց, որ հրաշալի երեխաներ ունի՝ երկու տղա և մի աղջիկ, երջանիկ է... Բայց հետո ցավով ասաց, որ իր երեխաները հայերեն չգիտեն:

Հարցրեց, թե Երևանում ի՞նչ գրքեր կան, որոնց օգնությամբ կարելի լիներ հայերեն սովորեցնել երեխաներին:

Ես պատասխանեցի, որ եթե ուզում է իր երեխաները հայերեն սովորեն,

ամենալավն այն է, որ ապրեն Հայաստանում: Ինձ թվաց, թե մեր խոսակցությունը այդ խնդրի շուրջ դրանով էլ վերջացավ: Բայց պարզվեց, որ ես սխալվել էի: Ամիսներ անց, մեկ էլ տեսնեմ ո՛չ միայն Ավետիսի ընտանիքը, այլև Հայաստանից դուրս ապրող բոլոր խոտորջուրցի բունռնազյանները ընտանիքներով տեղափոխվեցին Երևան:



Ավետիսի մեծ որդին՝ Սերգեյն ընդունվեց Պուշկինի անվան միջնակարգ դպրոցը և հենց առաջին տարում էլ գերազանցիկ եղավ:

Եվ դեռ մի տարի էլ չէր անցել, Ավետիսը մի անգամ հրճվալից գրկելով ինձ ուրախ-ուրախ ասաց.

— Հազա՛ր շնորհակալություն, Թորգո՛մ ջան, խորհրդիդ համար, Սերգեյն ինձնից լավ է հայերեն խոսում:

Սերգեյը գեղեցիկ մանչուկ էր, միշտ անթերի, կոկիկ հագնված, սանրված, շորերը անբասիր արդուկած: Սևորակ խոշոր-խոշոր աչքեր, պայծառ, նրբագեղ դեմք, ամենքի հետ սիրալիր, միշտ պատրաստակամ, առինքնող բարեկիրթ շարժուձևեր: Աշխատասեր, ընդունակ ու խելացի: Եվ ուսուցիչների ու ընկերների սիրելին ու մտերիմը: Մի խոսքով, սքանչելի՝ բառիս ամենալայն իմաստով:

Ձնայած տարիքին, հետը խոսելիս մեծ հաճույք էի ստանում: Նրա հետաքրքրությունների ոլորտը սահման չուներ:

Լսելով, որ ես եղել եմ զորավար Անդրանիկի զինվորներից, մի անգամ հարցրեց.

— Հոբա՛ր,— որ մեր բարբառով նշանակում է հորեղբայր,— ինչո՞ւ էր Անդրանիկը այնպես անվախ ու քաջ էր եղել, որ պաղարյունությամբ գնում էր թշնամու դեմ:

— Բազա՛ ջան, ինչպե՞ս քեզ ասեմ... Եթե ես անձամբ ականատես եղած չլինեի Անդրանիկի առասպելանման քաջագործություններին, դժվար թե ինքս էլ հավատայի ժողովրդի մեջ տարածված պատմություններին,— և պատմեցի մի քանի դրվագ Անդրանիկի կռիվներից, որոնց ես էլ բախտ եմ ունեցել մասնակցելու:

Եվ ավելացրի, որ Անդրանիկը ոչ միայն քաջ կռվող ու ռազմագետ էր, այլև հեռատես հայրենասեր: Նա դեռ 1918 թվականի սկզբներին հասկացել էր, որ հայ ժողովրդի շահերը պահանջում են, որ խորհրդային իշխանություն հաստատվի Անդրկովկասում:

Հայտնի է նույնպես, որ Անդրանիկը նույն 1918 թ. ամռանը իր հրամանատարության տակ գործող զորամասը անվերապահորեն դրեց խորհրդային իշխանության տրամադրության տակ:

Մի անգամ էլ նա հարցրեց.

— Հոբա՛ր, մի՞թե Հայնե, Շիլլեր, Գյոթե ծնող գերմանական ժողովուրդը կարող էր մեր անմեղ ժողովրդի կոտորածի՝ գենոցիդի մասնակիցը լինել:

Իսկապես անհավատալի է, բայց՝ փաստ...

Ես Սերգեյին բացատրեցի, որ պետք է գերմանական ժողովուրդը չնույնացնել գերման պետությանը, մանավանդ պրուսական ազնվապետական-կապիտալիստական պետությանը: Միաժամանակ ես նրան մանրամասն պատմեցի հայկական հարցում գերմանական ժողովրդի նշանավոր զավակներ Կ. Լիբկնեխտի և Ռ. Լյուքսեմբուրգի կատարած դերի մասին, պատմեցի նաև դոկտոր Լեպսիուսի մասին, որը առաջին համաշխարհային պատերազմի ընթացքում, մանավանդ հայկական

ջարդերը գլխավորող Թալեաթ փաշայի Բեռլինում կայացած դատավարության ժամանակ, ինչպիսի՜ ազնիվ դիրք բռնեց հայերի նկատմամբ:



Մի ամառ Սերգեյին հրավիրեցի ամառվա դպրոցական արձակուրդները անցկացնել Խոտորջուրի կոմունայում, որտեղ ես աշխատում էի որպես սովետի նախագահ: Մայրը սկզբում կարծես ուրախ եղավ (հայրը մահացել էր), բայց քիչ անց միտքը փոխեց, վախ հայտնելով, թե Սերգեյը չարություններ կանի, մեզ էլ անհանգիստ կանի, կուզենա սարերը բարձրանալ, անձրևի տակ կընկնի, կմրսի, կհիվանդանա և այլն և այլն:

Բայց ես պնդեցի և նա զիջեց: Մյուս օրը մենք մեկնեցինք Խոտորջուր:

Հենց երկրորդ օրը Սերգեյը խնդրեց թույլատրել իրեն աշխատանքից պարապ վերադարձող ձիերը նստել:

Շատ համեստ ցանկություն: Ես իմ պատանեկությունից լավ հիշում էի և գիտեի, թե որքան բաղձալի է պատանու համար ձի նստելը և սիրով թույլատրեցի նրան ոչ միայն աշխատանքից վերադարձող ձիերին նստելու, այլև նրան տրամադրեցի կոմունայի զտարյուն, Այրան անունով հովատակը: Բայց միաժամանակ նրան նախազգուշացրի, որ Այրանը շատ արագավազ է ու կամակոր և տարբե՜ր, տարբե՜ր քմայքներ ունի, մանավանդ անվարժ հեծվորի վերաբերմամբ, ուստի շատ զգույշ պիտի լինել, խրատներ էլ տվի, թե ինչպես պետք է վարվել նման ձիու հետ:

Նա ինձ լսեց ակնհայտ անհամբերությամբ ու վերցնելով սանձը, մեծ խանդավառությամբ ու ինքնավստահությամբ պատասխանեց.

— Ոչի՜նչ, հոբա՛ր ջան, մի կերպ լեզու կգտնենք Այրանի հետ...

Հրաշք տեղի ունեցավ, մի քանի օրվա ընթացքում Սերգեյը ամեհի ու կամակոր Այրանին կարծես կրկեսի ձեռնասուն ձի էր դարձրել: Բոլորս զարմացանք, թե ինչպես այդ գիժ հովատակը ոչ միայն հլու-հնազանդ ենթարկվում է պատանուն, լսում նրա հրամանները, այլև դարձավ նրա անբաժան ուղեկիցը, ընկերը:

Տարեց խոտորջուրցիները դրա վրա սկսեցին զանազան հետաքրքիր պատմություններ պատմել հին Խոտորջուրի ձիավարությունների և հմուտ հեծվորներից հատկապես Բունոնգ պապերի մասին, որոնց մեջ իբր թե եղել են ընշանավոր ձիավարներ, մանավանդ Նապոլեոն անունով Բունոնգ պապը, որը իր վարժեցրած ձիով, իբր թե, մի օրվա մեջ Էրզրումից Խոտորջուր էր հասնում և այլն և այլն, և իբր թե Սերգեյը նրան՝ իր այդ Նապոլեոն պապին է քաշել:

Այդ օրերին կոմունայում տեղի ունեցավ մի դեպք, որ կվերջանար ողբերգությամբ, եթե չլիներ Սերգեյը:

Երևանի Մաքսիմ Գորկու անվան միջնակարգ դպրոցը, մեր կոմունայի հետ կնքած պայմանագրի համաձայն, ամառվա ընթացքում, երբ մեր անասնապահական ֆերման բարձրանում էր սարը, նրա թափուր մնացած շենքերում (իհարկե, համապատասխան ախտահանումներից ու մաքրումներից հետո) տեղավորում էր Արամայիս Երզնկյանի անվան ճամբար-սանատորիան՝ դպրոցի թուլակազմ աշակերտների առողջությունը վերականգնելու համար: Ի՜նչ կասկած, որ Խոտորջուրի կլիմայական հրաշալի պայմանները, մանավանդ կոմունայի անմիջապես տեղում մատակարարած թարմ ու բարձրորակ կաթնամթերքները հրաշքներ էին գործում երեխաներին կազդուրելու, առողջությունները վերականգնելու համար: Ուստի շատ ծնողներ, հատկապես մայրեր, ոչ միայն ձգտում էին իրենց երեխաներին տեղավորել այդ սանատորիա-ճամբարում, այլև իրենք գալիս էին որպես սանատորիայի աշխատող, իրենց երեխաների հետ ամառը անցկացնելու Խոտորջրում:

Այդ ամառը ամբողջ երկու օր ու գիշեր անընդհատ հորդ անձրև տեղաց, ինչ որ այստեղ չտեսնված երևույթ էր: Բոլոր առուները հորդացան, գետակներ դարձան: Երրորդ օրը թեև կոմունայի տերիտորիայում անձրևը համարյա կտրվեց, երկինքն էլ պարզեց, բայց վերևներում՝ Մարմարիկի ամբողջ ավազանում, հորդ անձրևը շարունակվում էր, և գետի հունը հետզհետե անձայն, անաղմուկ, աննկատելի բերնեբերան լցվեց, ապա գետափնյա դուրանն էլ, որ մենք «ճալա» էինք կոչում, սկսեց լցվել հեղեղաջրով: Քանդվեցին, փուլ եկան բոլոր կամուրջները, հաղորդակցությունը կտրվեց գետի երկու ափերի միջև:

Այդ ամենն առանձնապես չէր անդրադառնում կոմունայի գործերի վրա և մենք անհանգիստ չէինք: Բայց երբ այդ օրը ճաշի զանգը տրվեց, և սանատորիայի երեխաները հավաքվեցին ճաշարանում, առաջացավ մեծ տագնապ. պարզվեց, որ մի 10—11 տարեկան երեխա բացակայում է, չկա... Նրա մայրը, որը քաղաքից էր և շատերի պես աշխատում էր սանատորիայի երեխաներին սպասարկողների կազմում, մեկեն վայնասուն բարձրացրեց, այնպես բարձրագոչ լաց ու կոծ դրեց, որ ոչ միայն սանատորիայի աշ-



խառողները, այլև մոտիկ գտնվող կոմունարները աշխատանքները թողած, վազեցին եկան նրա ձայնի վրա:

Անմիջապես ամեն կողմ մարդ ուղարկեցինք երեխային փնտրելու:

Բավական ժամանակ անցավ, երեխան չգտնվեց, նրա մասին ոչինչ չիմացվեց: Միայն պարզվեց, որ նախաճաշից հետո տղան, երբ կամուրջները դեռ չէին քանդվել, գնացել էր կոմունայի հինգերորդ մեղվանոցը, որը գտնվում էր ճալայից դենը՝ գետի ձախակողմի բարձրադիր դուրանում: Մտածեցինք, թե երեխան երևի այնտեղ է՝ մեղվանոցում... Բայց մայրը դեռ շատ անհանգիստ էր, և ուզում էր անմիջապես ստուգել, իսկ կամուրջների քանդվելու հետևանքով այլևս այն կողմը անցնել չէր կարելի: Կոմունարները դրոշակային կապ ստեղծեցին մեղվանոցի վարիչ՝ կոմունար Հաբեթի հետ և Հաբեթը հայտնեց, որ ճիշտ է, մեղվանոցում իր մոտ եղել էր երեխան և մեղրով հյուրասիրվել, սակայն դեռ կամուրջները չփլված հեռացել էր, իսկ թե ո՞ր կողմի վրա՝ չեն նկատել:

Դեպի Հանքավան, Ողաշիկ և Սևաբերդ փնտրտուքի մեկնած տղաները էլ ձեռնունայն վերադարձան: Երեխայի մայրը ավելի բորբոքեց սուգն ու շիվանը: Նա մեկ փաթաթվում էր ինձ, մեկ սանատորիայի իրենց ղեկավարներին՝ աղաչում, պաղատում, պահանջում միջոցներ ձեռնարկել, գտնել իր երեխայի թեկուզ... դիակը:

Ի՞նչ եղավ, ո՞ւր կորավ երեխան՝ մտմտում էինք բոլորս... Երկու հավանական բացատրություն կարող էր լինել. մեկը՝ գուցե գետն անցնելիս ընկել է ջուրը... այդ իհարկե սարսափելի կլիներ: Երկրորդը՝ գուցե երեխան Հաբեթի մոտ մեղր անուշ անելուց հետո, ցանկացել է նաև սեր ու մածուն անուշ անել և սուսուփուս, կուզեկուզ Ագվին անտառով բարձրացել է յայլա... Այդ ենթադրությունը շատ հավանական թվաց: Սերգեյը իմ ակնարկի վրա անմիջապես թռավ իրենից անբաժան Այրանին ու ամենայն արագությամբ դիք սարն ի վեր վարգեց յայլաների

կողմը: Ես կարողացա նրան պատվիրել, որ անմիջապես մեզ լուր տա երեխայի այնտեղ լինելու մասին: Մենք հուսադրված սկսեցինք ակնդետ նայել յայլայի ճամփին, հետևել Այրանի վազքին, սպասել բարի լուրի:

Քիչ անց հորիզոնի վրա երևաց Այրանը, վրան Սերգեյը, որ ձեռքով բացասական նշաններ էր անում, թե՝ երեխան յայլայում չէ... Մեր վերջին հույսը մարեց: Ուշագնաց էր լինում խեղճ մայրը... Բայց Սերգեյը հանկարծ արագացրեց Այրանի հանդարտ վազքը և խելահեղ արագությամբ իջնում էր սարից: Արդյոք ի՞նչ էր տեսել, ի՞նչ էր պատահել, ոչինչ չէինք հասկանում ու անհամբեր սպասում էինք Սերգեյին... Նա ոչ թե դեպի մեզ եկավ, այլ ձին ուղղակի քշեց մտավ արդեն լճացած ճալան... այսինքն, հեղեղաջրով բռնըված գետի հունը և անմիջապես էլ կորավ մեր տեսադաշտից: Ես վախեցած գոռացի. «Վա՜յ» ու նետվեցի այն կողմը: Ես վախենալու հիմք ունեի, որովհետև լավ գիտեի, որ այժմ պղտոր ջրով ծածկված այդ տարածությունը՝ ճալան, որտեղ կորան Այրանն ու Սերգեյը, ամբողջովին պատած է խութերով, կտրված ծառերի կոճղերով, որոնք չեն երևում պղտոր ջրի մեջ, հետևաբար Այրանը կարող է հեշտությամբ «քթի վրա գալ»՝ սայթաքել ու հեծվորին վայր գցել, տակովը տալ:

Ես դեռ տառապագին մտքերի հետ էի, մեկ էլ տեսնեմ՝ Այրանը բոլորովին անսպասելի մի տեղից դուրս նետվեց պղտոր ջրի միջից ու հաղթական կանգնեց ափի կանաչի վրա և եռանդով թափ տվեց իրեն:

Նրա վրա ամուր նստած էր մեր ըռքանչելի պատանին՝ գրկին՝ կորած մանչուկը:

Տեսնելու էր երեխայի մոր բերկըրանքն ու ցնծությունը... Ինչպե՜ս էր լալիս ուրախությունից ու Սերգեյի թաց ու տղմոտ ոտքերն ու սրունքները գըրկած համբուրում և օրհնում, երանի տալիս նրա բախտավոր մորը:

Ահա թե ինչ էր տեղի ունեցել:

Մեր հովիվը դեռ գարնանից իր համար շինել էր մի հարմարավետ, գողտրիկ ցանցաճոճքի պես հարմարանք խիտ ուռենիների մեջ և հաճախ կեսօրին, երբ, իհարկե, կովերը դեռ յայլա չէին բարձրացած լինում, նրա մեջ պառկում հանգստանում էր: Այդ օրը մանչուկը Հաբեթի մեղվանոցից վերադառնալիս նկատել էր այդ գեղեցիկ ցանցաճոճքը և խելքին փչել էր, նրա մեջ մի քիչ պառկել, բայց անմիջապես էլ քունը տարել էր ու խոր քուն մտել: Դրան անշուշտ նպաստել էին տոթն ու տամուկ եղանակը, մանավանդ, ինչպես հետո բացատրեց երեխայի մայրը՝ երեխայի քնկոտությունը:

Ես ավելի քան հուզված էի և կըշտամբեցի Սերգեյին խելահեղ արագությամբ ճալայի հեղեղաջուրը մտնելու համար, բայց իմ վրդովմունքը միանգամայն անիրավացի դուրս եկավ... Շրջահայաց պատանին յայլայից վերադառնալիս ձիու վրայից աչալուրջ ամեն կողմ նայել, հետազոտել էր, փընտրել էր կորած մանչուկին ու վերևից տեսնելով ցանցաճոճքի մեջ պառկածին, հասկացել էր, որ անշուշտ նա քնած կլինի, որ չի նկատում, թե ինչպես հեղեղաջուրը արդեն խաղաղ ու անձայն հասնում է իրեն:

Ինչ կասկած, որ եթե Սերգեյը մի քիչ էլ ուշանար, ուրեմն ջուրը ծածկելու և խեղդելու էր տղային գուցե դեռ չարթնացած։

Երբ սեզոնից հետո Սերգեյի հետ վերադարձանք Երևան, ես անմիջապես նրան տարա հանձնեցի մորը, ինչպես ասվում է՝ «սաղ-սալամաթ» ու պատմեցի, թե ինչպես իր փայփայած, փափկասուն համարած տղան անվախ ու համարձակ ձին քշում էր սարերով ու ձորերով, անցնում գետերով ու հեղեղատներով, ձին ցատկեցնում անդունդների վրայով և այլն, և այլն։ Ես սպասում էի, թե մայրը կսարսափի, վախեցած կդժգոհի, բայց նա շատ հանգիստ ընդունեց այդ բոլորն ու ասաց.

— Այդ ուրիշ բան... Թորգոմ Գալուստովիչ, այդ կարելի է... Այդ հո երկինք չէ՞, օդ չէ, այդ կարելի է... ոչինչ...— դրանով մայրը հիշեցնում էր օդաչու դառնալու որդու ցանկությունը, որին ինքը սաստիկ դեմ էր։

Այդ զրույցի ժամանակ Սերգեյը մեր դեմ հանդիման հանգիստ նստած լուռ ժպտում էր իր առինքնող, սիրալիր ժպիտով, ապա խոնարհաբար վերցնելով մոր ձեռքերը մոտեցրեց շրթներին ու լռելյայն ջերմագին համբուրեց։

Ես կոմունայի գործերով մի շաբաթից ավելի մնացի Երևանում և երբ վերադարձա, մեր ձիապան Վասիլի Ծուբինը հայտնեց, որ Այրանը ծանր հիվանդացել է։

Տերերը պնդում էին, թե անասուններից հատկապես շունն ու ձին մարդ արարածից էլ զգայուն են, կապվում են տիրոջ հետ և անկարող են լինում տանել բաժանումն ու երբեմն նույնիսկ կարոտից մահանում են... Նրանց կարծիքով Այրանն էլ Սերգեյի կարոտից էր հիվանդացել։

Մենք Այրանին փրկել չկարողացանք։

Բնության մեջ ինչքա՜ն գաղտնիքներ կան դեռ։

Մենք Սերգեյին չհայտնեցինք Այրանի մահը, նա շատ կվշտանար։

*Նկ. ՀԵՆՐԻԿ ՄԱՄՅԱՆԻ*



# Ստեղծագործում են կոմերիտականները



ԳԱԳԻԿ ՆԱՀԱՊԵՏՅԱՆԸ սովորում է Երևանի Դ. Դեմիրճյանի անվան դպրոցի 10-րդ Բ դասարանում։
Ամոթխած, լուրջ, ինքնամփոփ տղա է։
Գրել սկսել է 7-րդ դասարանից։
Ուրախալի է, որ օր-օրի ավելի ամբողջական ու ինքնատիպ են դառնում նրա բանաստեղծությունները։

Հ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ
Հայոց լեզվի և գրականության ուսուցչուհի



Նրա համար է արևդ այսքան վառ,
Երկինքդ այսքան կապույտ ու անծիր,
Որ թեկուզ եղար ավեր ու ավար,
Բայց աստվածախոս Նարեկ երկնեցիր։
Նրա համար է հողդ այսքան տաք,
Նրա համար է քարդ կանաչում,
Որ քո մայրական բեղուն կրծքի տակ
Մաշտոցի նման լույսեր են ննջում...



Երջանկությունից փայլփլո՛ղ աստղեր,
Որ կապույտներում շողշողում եք վառ,
Եթե դուք ունեք կարեկցանք ու սեր,
Եվ հասկանում եք վիշտս անբարբառ,
Աղաչում եմ ձեզ, որ սլանաք ցած
Եվ իմ կյանքի մեջ գոնե մի գիշեր,
Զարդարեք սիրուս երկինքը մթնած...



Ծովից կարծես
Ծաղիկների բույր է գալիս...
Ծաղկունքը՝ հեզ
Ծովին կարծես
Լույս են տալիս...
Այդ աստղերն են
Ծովի համար իրենց անմար
կյանքը տալիս...



Դեղին հանգած աշնան քամին
Մորմոքում է ու լալիս,
Մութ դաշտերում այս ուշ ժամին
Տեսնես ո՞ւմ է ման գալիս։

Ի՞նչ է թողել դաշտերի մեջ,
Տեսնես ո՞ւմ է կորցրել, որ
Լաց է լինում մենակ ու խեղճ,
Դառած գիշեր սգավոր...



Աչքս բացեցի ծարաված սրտով,
Որ խմեմ կապույտ երազը ծովի,
Ինձ էին նայում լեռները խինդով,
Ու մեղմ հնչում էր սրինգը հովի։

Ծնվում էր կարծես ծովի կապույտից
Մի քնքուշ-քնքուշ ու մի անուշ երգ,
Ծնվում էր, հետո հալվում կարոտից
Ու դառնում էր մի ձյունաճերմակ
ձեռք։

Եվ կանչում էր ինձ, կանչում էր սիրով
Դեպի իր երգի հեռուն աննման,
Եվ սահում էի ծովի վրայով
Ես երազի մեջ՝ երազի նման...

❊

Երկինքը նորից կապույտ էր հագել,
Կապույտ գիշեր էր ու կապույտ
երազ,
Լուսինը քնքուշ մի կարոտ գրկել
Ու հեռու հեռվից նայում էր վրաս:

Երբ գարնան կանաչ-կանաչ դաշտերի
Հովը գազելներ երգելով անցավ,
Չգիտեմ հովի՞ց, թե՞ կույս աստղերի
Երգից իմ սիրտն էլ կապույտ երգ դարձավ:

❊

Քնքուշ զեփյուռը թերև թևելով
Կանաչ թփերը թերթելով անցավ,
Երկինքն էլ նորից լուսին երկնելով
Կարճամշուշի օվկիանոս դարձավ:

Իջավ գիշերը, վառվեց ծաղեծալ,
Որպես լուսնյակից կաթող տաքություն,
Եվ ցաված սիրտս համոզվեց դարձյալ,
Որ վշտի մեջ էլ կա երջանկություն...

❊

Վառվում է ու ծիծաղում
Ծաղիկ արևը
Եվ իր լույսով ողողում
Վարն ու վերևը:

Թե մոտիկից ճանաչես,
Նա էլ վիշտ ունի,
Բայց բարության իր լույսն է,
Որ վախճան չունի...

❊

Գարնան թխավարս, գեղեցիկ ամպեր,
Սիրո, կարոտի հույզերով լեցուն,
Ղողում եք դեպի հեռավոր ափեր,
Զմրուխտյա գանձեր թողնելով ցածում:

Արագիլների ճերմակ թևերով
Տամ գարունս ձեզ, շանթաշո՛ւրթ ամպեր,
Տարե՛ք գարունս խինդ ու սերերով՝
Արև երազող հեռավոր ափեր...

❊

Մարդու համար այս աշխարհում
Անմատչելի ոչինչ չկա.
Հուր է վառվում քո աչքերում,
Ու իմ այրվող սիրտը վկա՝
Մի աշխարհ կա քո աչքերում,
Ուր մատչելի ոչինչ չկա...

❊

Աշունը տխուր իջնելով ծառից՝
Եկավ ու փարվեց կենսատու հողին
Եվ, խուլ տնքալով խոհերի բեռից,
Դեպի վեր հառեց աչքերը դեղին:

Բայց թեթևացավ դառը խոհերից,
Երբ այնտեղ տեսավ շողն արեգակի,
Ու մեղմ կարկաչեց նրա շուրթերից
Ոսկե հեքիաթը հավերժող կյանքի...

❊

Ծովակը ծփում է, ծփում ու
ծափում է,
Ծափում է ու ծեփում ափերը,
Գիշերը իջնում է, իջնում ու ծնում է
Ծնում իր ծիրանե լապտերը:

Երկինքը ցնծում է, ցնծում ու
լցնում է,
Լցնում է իր ձույլ աստղերով,
Լուսինն էլ կարծում է ինչ որ կա
ցածում է
Ծովի ծոցն է թռչում գիշերով...

❊

Քնքուշ է այնպես,
Հայացքն արևի
Ու ջերմ է այնպես...

Մորս հոգին է
Հյուսվել երևի
Լույսին արևի...
Ու ժպտում է մեզ...

# ԶՐՈՒՅՑՆԵՐ ԼԵԶՎԻ ՄԱՍԻՆ

*ԼևՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ*
*բանասիրության դոկտոր*

### 37. ՀՆԱՐԱՎՈ՞Ր Է ԽՈՍԵԼ ՀԱՅԵՐԵՆ ԲԱՌԵՐՈՎ, ԲԱՅՑ ՈՉ ՀԱՅԵՐԵՆ, ԿԱՄ՝ ՀԱՅԵՐԵՆ ՄՏԱԾԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Այո՛, հնարավոր է: Դժբախտաբար, շատ հաճախ մենք հենց այդպիսի «հայերեն» էլ լսում ենք:

Եթե մեկը ձեզ ասի՝ «ընկեր այսինչյանն իր մոտ չէ» (ուզենալով ասել՝ իր սենյակում, իր տեղում չէ), «ուզում եմ իմ տպավորությունները կիսել քեզ հետ» (այսինքն՝ հայտնել քեզ), «ուզում եմ կիսվել քեզ հետ» (այսինքն՝ սիրտս բաց անել քո առաջ), «ես չեմ հավաքվում բողոքելու նրա դեմ» (այսինքն՝ մտադիր չեմ), «նա պատրաստվում է պաշտպանել ընկերոջը» (այսինքն՝ միտք ունի, մտադիր է),—այս և նման դեպքերում հաստատ իմացեք, որ մարդը հայերեն չի խոսում: Բերածս բոլոր օրինակներում բոլոր բառերը հայերեն են անխտիր, բայց բոլոր օրինակները էլ հայերեն չեն անխտիր: Ինչու՞:

Որովհետև, դրանց բառե՛րն են հայերեն, բայց ոչ մտածողությունը, իսկ դա շատ կարևոր է, ավելի կարևոր, քան բառերի հայերեն լինելը: Մտածողությունն է հուշում, թե ինչ բառեր պետք է ընտրվեն և դրանք ինչպես պետք է հյուսվեն, համաձայնության գան որևէ միտք արտահայտելու համար:

Ահա թե ինչու Հովհաննես Թումանյանը գրում էր. «... ամենից կարևորը լեզվի հիմքն է, իսկ լեզվի հիմքը լեզվի համաձայնությունն է, բառերի ու նախադասությունների հարաբերությունն ու կապը»:

Մենք շատ ենք խոսում ու գրում օտարամուտ բառեր գործածելու դեմ, բայց անհամեմատ քիչ՝ մեր խոսքը հայոց լեզվի օրենքներով հյուսելու մասին: Մինչդեռ, ինչպես տեսաք, դա կարևոր է ոչ պակաս, Թումանյանի կարծիքով՝ նույնիսկ ավելի:

Ինչպես ասացինք մեր նախորդ զրույցներում, ամեն մի լեզվի մտածողության յուրահատկություններն ամենից ցայտուն երևում են տվյալ լեզվի դարձվածքների մեջ:

Հիմա բաց անենք հայոց լեզվի դարձվածքների շտեմարանը և գննենք միայն աչք բառի հետ կապված դարձվածքների մի շարք. աչքդ լույս, աչքի լույս, աչքին թոզ փչել, աչքերի քողն ընկնել, աչքը ծակ, աչքը դուրս, աչքը լիքը, աչքը կուշտ, աչքը ճամփին մնալ, աչքը մտնել, աչքը շոյել, աչքը չորս անել, աչքը վրան մնալ, աչքը տնկել, աչքից ընկնել, աչքիս վրա, աչքի տակ պահել, աչքից գցել, աչքից չփախցնել, աչքի փուշ, աչքով անել, աչքով տալ, աչքում արժեք ունենալ, աչք ունենալ և այլն, և այլն:

Տեսնու՞մ եք ինչքան շատ են, լեզվական ի՜նչ վիթխարի հարստություն: Եվ սրանք եղածի դեռ մի մասն են: Ջնջեցեք այս դարձվածքները, փորձեցեք մտովի թարգմանել դրանք, և կհամոզվեք, որ մի քանիսն իրոք կարելի է թարգմանել (աչքով տալ— сглазить, աչքին թոզ փչել— пускать пыль в глаза), բայց մեծագույն մասը բացարձակապես անթարգմանելի են. твоим глазам свет բնավ չի նշանակի աչքդ լույս, չի հասկացվի, թե շնորհավորում ես մեկին շատ ուրախ առիթով, свет глаз չի նշանակի աչքի լույս, չի հասկացվի թանկագին մարդ, войти в глаз չի նշանակի աչքը մըտնել, չի հասկացվի, թե մեկին դուր գալու ջանք է թափվում:

Անկախ այն պարագայից՝ թարգմանելի՞ են այս դարձվածքները թե ոչ, այսինքն՝ սովորակա՞ն դարձվածքներ են, թե՛ իդիոմներ, այս բոլորը խորապես հարազատ են հայերեն մտածողությանը, դրանք գալիս են դարերի խորքից, ստուգվել, բյուրեղացել են մեր ժողովրդի դարավոր կենսափորձով, կապված են մեր ժողովրդի պատմության, կենցաղի, բարքերի սովորույթների, վերջապես, բանահյուսության հետ: Եվ այսօրինակ դարձվածքների մեջ է թաքնված լեզվի ոճն ու ոգին:

Զուր չէ, որ Ալեքսանդր Ֆադեևը գրում էր. «Ի՞նչ է նշանակում ազգային ձևն արվեստի մեջ: Դա ամենից առաջ նշանակում է մայրենի լեզու: Դա նշանակում է ամեն մի ժողովրդին յուրահատուկ խոսքի ոգի և համակարգ, խոսք, որ հարյուրամյակների ընթացքում ամբարել է ժողովրդական բանահյուսությունը»: Ասվածը վերաբերում է նաև մեր լեզվին ու բանահյուսությանը: Իհարկե, եթե խոսքի համակարգը, հյուսվածքը հայերեն չէ՝ խոսքը չի կարող հայերեն լինել, ինչքան էլ բառերը զուտ հայերեն լինեն, իսկ եթե հյուսվածքը հայերեն է՝ խոսքը կլինի հայերեն, եթե նույնիսկ բոլոր բառերն օտարամուտ լինեն, ինչպես Դերենիկ Դեմիրճյանի բերած այս օրինակում. «Տրակտորների դետալները կոմպլեկտավորվեցին»:

Ահա թե ինչքա՜ն կարևոր են «բառերի ու նախադասությունների հարաբերությունն ու կապը», այսինքն՝ բառերը լծորդելու, խոսքը հյուսելու ձևն ու կերպը:

Դրանք, ինչպես տեսանք, ամեն մի լեզվում ունենն անկրկնելի յուրահատկություններ: Հայոց լեզվում՝ նույնպես:

Ի՞նչ պետք է անենք մայրենի լեզվի յուրահատկություններին տիրապետելու համար:

Պետք է սովորել հայերեն մտածել:

Ավելի քան հարյուր տարի առաջ, 1853-ին, Մոսկվայի Լազարյան ճեմարանում հայոց լեզվի իր առաջին դասին Ստեփանոս Նազարյանն ասել է. «Մենք պետք է հայերեն մտածել սովորենք, ահա մեր ուսմունքի գլխավոր նպատակը»:

Նրա այս պատգամը մինչև օրս չի հնացել:

Չի հնացել ոչ միայն հայոց լեզվի վերաբերմամբ:

Ժամանակակից ռուս լեզվաբանները նույն պահանջներն են առաջադրում՝ ռուսաբար մտածելը համարելով առաջին անհրաժեշտություն:

Նույն օրինաչափությամբ մենք էլ խոսում ենք հայաբար մտածելու մասին:

Երկու դեպքում էլ նպատակը նույնն է՝ հավատարիմ լինել մայրենի լեզվի յուրահատկություններին, տվյալ լեզվի մտածողությանը, ոճին ու ոգուն:

*ՎՈԼՏ ՍՈՒՍԼՈՎ*

# ՆԱ ՈՒՐԻՇ-ՆԵՐԻ ՆՄԱՆ ՉԷՐ



Նա դպրոց եկավ ուսումնական տարվա կեսին: Հայրը՝ Սոկոլովը սահմանապահ զորքերի սպա էր: Ընտանիքն ստիպված էր լինում տեղից-տեղ տեղափոխվել: Վոլոդյայի համար այդ արդեն երրորդ դպրոցն էր:

Նոր դասընկերները, հասկանալի է, թե ինչու նրան առաջին հերթին խնդրեցին պատմել սահմանի մասին: Նա պատմեց «Սահմանապահների պատանի բարեկամների» մասին, որի հրամանատարն էր եղել ինքը: Եվ զարմանալի չէ, որ Վոլոդյան համադասարանցիների մեջ մեկեն հեղինակություն ձեռք բերեց:

Մեկ ամիս չէր անցել, դասարանում մեկը թաքցրեց դասամատյանը (երևի կարծեց դրանով «օգնեց» բոլոր մյուսներին): Բնականաբար աշակերտներին հարցում արվեց, թե ո՞վ է այդ արել: Եվ ինչպես հաճախ պատահում է նման դեպքերում, դասարանը լռեց: Դասերից հետո բոլորից պահանջվեց տուն չգնալ: Նստեցին մինչև ուշ երեկո և լռեցին:

Հետևյալ օրը Վոլոդյան իր կողքին նստողին հարցրեց.

— Ի՞նչ էիր ուզում դրանով արած լինել:

— Ոչինչ... — շփոթված ասաց նա:

— Ինքդ կասե՞ս մատյանը որտեղ է, թե՞ ես ասեմ:

— Հապա փորձի՛ր,— հարևանը դադարեց ժպտալ:

Աշակերտներին նորից հարցում արվեց դասամատյանի մասին: Նորից լռություն:

Այն ժամանակ Վոլոդյան ոտքի կանգնեց և հայտնեց:

Դպրոցից դուրս գալիս փողոցում տղաները սպասում էին նրան:

— Դե, ի՞նչ կասես,— վրա քշեց նրա կողքին նստողը:

— Վախկոտ լինել պետք չէ,— նետեց Վոլոդյան ու շարունակեց ճանապարհը:

Դասարանը երկար ալեկոծված քննարկում էր Վոլոդյայի վարմունքը: Դասընկերների մի մասը երես դարձրեց նորեկից: Միայն Անդրեյ Բաբինը շարունակեց նրա հետ ընկերություն անել: Բայց շուտով նրանց ընկերու-



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

թյունն էլ ճեղքեր տվեց, առաջին հայացքից դատարկ բանի համար:

Անդրեյն ընդհանրապես սովորում էր կարգին: Բայց ահա տարվեց դահուկներով, օրերը վատնում էր, դրա վրա և դասերի համար ժամանակ չէր մնում: Սկսեց «երկուսներ» ստանալ: Ջոկատն իսկույն նեթ որոշեց օգնություն հասնել, և հանձնարարվեց այդ Վոլոդյային:

Բայց Վոլոդյան անսպասելի կերպով հրաժարվեց:

— Ես պատրաստ եմ օգնել նրան, ով հիվանդ է եղել, դաս է բաց թողել ու ինչ-որ բան չի հասկանում,— ասաց նա:— Անդրեյին օգնել պետք չէ, նա ինքն էլ կարող է հասնել դասարանին, բաց թողածը ինքնուրույն լրացնել:

Դասարանը ապշեց. այ քեզ ընկե՛ր... Հրաժարվեց դժվար պահին օգնել ընկերոջը...

Գարնան դեմ Բաբինն իրոք բաց թողածն հասցրել էր և ամբողջ դասարանով փոխադրվեցին վեցերորդ դասարան:

Բայց հիմա էլ պատահեց մի այլ բան:

Այժմ Վոլոդյայի հետ մի նստարանի նստում էր Լենա Պրոկլովան: Նրանք մի շենքում էլ ապրում էին, միասին էլ դպրոցից տուն գնում: Դասարանում ծայր էր առել խնդմնդուք, ժպիտներ, ակնարկներ: Բայց Վոլոդյան ուշադրություն չէր դարձնում դրա վրա:

Մեկ էլ ձմռանը, տարեմուտից առաջ, Լենան տեղափոխվեց մի այլ նստարանի: Ի՞նչ էր պատահել: Լենայի ընկերուհիները տեղյակ էին:

Պարզվում էր, որ Վոլոդյան նրբամիտ մարդ չէր: Կես տարի է Լենան պատմում էր նրան Լյուսյայի արտասահմանյան երկարավիզ կոշիկների, Օկսանայի փառահեղ ջինսի, նաև Թամարայի մոր մասին, որը լայն ծանոթություններ ունի և ուզած բանը կարողանում է ձեռք բերել: Վոլոդյան լուռ լսում էր, լռում, ու մեկ էլ թե.

— Մի՞թե քեզ այդ բոլորն այդքան հետաքրքիր է, ի՜նչ հիմարություն...

— Դու ինքդ ես անհետաքրքիրը,— վիրավորվում է Լենան:

Ընկերուհիներից երեքը պաշտպան կանգնեցին Լենային: Հարմար պահ որսալով, երբ մյուս ընկերուհիներից մոտները չկային, նրանք երեքով որոշեցին վիճել Վոլոդյայի հետ:

— Ի՞նչ է, դու համաձայն չե՞ս, որ մարդու ամեն ինչը պետք է գեղեցիկ լինի:

— Համաձայն եմ,— պատասխանեց Վոլոդյան,— և՛ հոգին, և՛ մտքերը:

— Մտքերը պետք է ամեն մեկինը սեփականը լինեն:

— Իհարկե,— համաձայնեց Վոլոդյան,— միայն թե ավելի լավ են խելացի մտքերը:

— Թե՞ գեղեցիկ,— համառեցին աղջիկները:

— Գեղեցիկ պետք է լինեն երազանքները:

Կարճ ասած՝ վեճի վերջում ընկերուհիները տեսան, որ Վոլոդյան իրենց հետ ոչ մի հարցում չհամաձայնեց: Ահա թե ինչպիսին է նա՝ ինքն է որ կա... Այսպիսի մեկին կարելի՞ է ընկեր համարել:

Մի շտապեք բացասական պատասխան տալ: Հարկավոր է նախ լավ մտածել: Առանց շտապելու: Ժամանակ անց, այդ երեխաները փոխադրվեցին վեցերորդից յոթերորդ, ապա ութերորդ դասարան:

Պիոներական ջոկատը հասունացավ: Դարձավ կոմերիտական խմբակ: Իրենց առաջին իսկ ժողովում, կոմերիտմիության կազմակերպիչ ընտրելիս, Անդրեյ Բաքինը վեր կացավ և առաջարկեց.

— Սոկոլովին, Վոլոդյային:

Նրան էլ ընտրեցին միաձայն:

Ինչու՞: Հավանաբար հենց նրա համար, որ մեծացել էին և արդեն կարողանում էին գնահատել մարդու մեջ ոչ թե այն, ինչը առաջին հայացքից ընկատվում է, այլ այն, ինչը իսկական է:

# «ԾՈՎԱՍԱՐ»

Ովքեր մեկ անգամ . ունկնդրել են Թալինի շրջանի Վերին Սասնաշեն գյուղի ազգագրական «Ծովասար» երգչախմբին, արդեն զգացել են նրա անսպառույն արվեստի հմայքը: Երգչախմբում ընդգրկված են երեք տասնյակ աշակերտ՝ առաջինից մինչև տասներորդ դասարանցիներ: Հիմնական կազմը աշակերտուհիներից է, իսկ տղաները չորսն են՝ ցածր դասարանցիներ: Ընդամենը երկու տարի է, ինչ ստեղծվել է խումբը՝ դպրոցի հայոց լեզվի և գրականության ուսուցիչ Ժորա Հակոբյանի ջանքերով: Երգչախմբում, երեխաների հետ, նրանց կողքին երգում են նույն դպրոցի ուսուցչուհիներ Ոսկանյան քույրերը: Նրանցից Անթիկա Ոսկանյանն ավարտել է Երևանի պետհամալսարանի բանասիրական ֆակուլտետը: Նա էլ հենց երգչախմբի գեղարվեստական ղեկավարն է: Մյուս քույրը՝ Եպրաքսյան, խմբի մեներգիչներից է, կատարում է Սասնա նշանավոր «Գորանի», «Գի քելեր»,



ԺՈՂՈՎՈՒՐԴՆ Է ԱՄԵՆԱՄԵԾ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՂԸ, ԳՆԱՑԵՔ ԵՎ ՍՈՎՈՐԵՔ ՆՐԱՆԻՑ։

ԿՈՄԻՏԱՍ

# ԵՐԳՉԱԽՈՒՄԲԸ

«Չէ, Մարո ջան» և այլ երգեր։

Նախատեսված է երգչախմբի ծրագրերը լրացնել Սասնա առնական ու հերոսական պարերով՝ «Գյովունդ», «Մավ պար», «Մշո խըռ», «Մոմերով պար» և այլն։ Շրջանի կուլտուրայի բաժինը հոգացել է երգչախմբի բեմական զգեստավորման ծախքը։

Երգչախումբն ունի իր ձայնադարանը, բաղկացած 86 երգից, որից երգում են այժմ միայն 82-ը։ Մնացած երգերը ժամանակի ընթացքում նույնպես կմտնեն խմբի երգացանկի մեջ, միաժամանակ կհավաքվեն նոր երգեր գյուղի ծերերի օգնությամբ, ովքեր տակավին լավ են հիշում հայրենի Սասունը, այնտեղի ժողովրդական ծիսակատարությունները, որոնք ուղեկցվում էին երգերով։

Գյուղում մեծից փոքրը ականածանքով են տալիս իրենց համագյուղացի երգիչներ Բարսեղ Ստեփանյանի և Պետրոս Գրիգորյանի անունները, որոնք անաղարտ վիճակում Սասունից Թալին բերեցին հայ ժողովրդական երգերի ու պարերի անսպառ պաշարը, մինչև խոր ծերություն երգում էին, պարում, երեխաներին սովորեցնում այդ երգերն ու պարերը։

Պապերի երգած «Նանայ-նայ», «Մամ իս թորգի», «Գի քելեր», «Մանդր անձրև» երգերը այժմ իրենց զնգուն ձայնով հնչեցնում են գյուղի աղջիկներն ու պատանիները, որպես Սասնա սարերից եկող աղբյուրների անմոռաց կարկաչ, որպես կարոտ, որպես երազ, որպես իրենց հավերժական ուղեկից։

*ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆ*



# ԻՍԿ ԴՈ՞Ւ...

**Այս անգամ իրենց հուզող հարցերին պատասխանում են Երևանի № 24 դպրոցի աշակերտները**

## ՃՇՄԱՐ-ՏՈՒԹՅԱՆ ԱՉՔԵՐԻՆ ՆԱՅԵԼՈՎ...



*ՋԻՎԱՆ ՍՈՂՈՅԱՆ,*
*9-րդ դասարան*

Ես տասնվեց տարեկան եմ:

Մեկ-երկու տարի և ինձ կողջունի կյանքն իր ամենայն բարիքներով ու գեղեցկությամբ, խութերով ու անակնկալներով: Այս ամենով է կյանքը հետաքըրքիր և այս ամենն է հաճելի դարձնում ապրելը: Ես նախ և առաջ մտածում եմ այնպիսի մարդ դառնալ, որ պիտանի լինեմ իմ ժողովրդին: Ժողովուրդ, որ այնքան շատ արյուն ու արցունք, ավեր ու Ավարայր է տեսել, բայց փյունիկի նման կենդանի է դուրս եկել մոխիրների տակից:

Մեր աչքերի առջև օրեցօր ծաղկում, սիրունանում է հայության միակ մայրաքաղաքը՝ Երևանը: Այն մեր ավագներն են ստեղծել՝ մեր հայրերն ու պապերը: Եվ եթե մեր մեծերը վաթսուն տարում այսքան շատ բան են արել, ուրեմն ավելին պահանջելու իրավունք ունեն մեզնից՝ մեր ամբողջ սերնդից:

Չեմ ուզում վատատես լինել, բայց ճշմարտության աչքերին նայելուց էլ չպետք է խուսափել: Կուզենայի հրաշք լիներ և իմ հասակակիցներից յուրաքանչյուրը ավագների ստեղծածը փչացնելու՝ պատ քերծելու, հուշարձաններ խզբզելու, պաստառ պըլոկելու փոխարեն մտածեր, նախապատրաստեր իրեն լավ գործի՝ բարին ու բարիք ստեղծելուն...

# ԻՆՔՆՈՒՐՈՒՅՆ ՔԱՅԼԵԼՈՒ ՏԱՐԻՔ



ՄԱՐԻԵՏԱ ԲՈԼՍՅԱՆ,
8-րդ դասարան

Ես տասնհինգ տարեկան եմ:

Այս տարիքում աշխարհահռչակ կոմպոզիտոր Մոցարտը գրել է իր առաջին սիմֆոնիան, Վիկտոր Համբարձումյանը տիեզերքի մասին գիտական հոդվածներ է գրել, Դուրյանը...

Ուրեմն տասնհինգը ո՛չ մանկական, ո՛չ էլ անհոգ հասակ է: Մեկ տարի հետո անձնագիր ենք ստանալու: Մեզանից ոմանք կգնան սովորելու, ոմանք աշխատելու: Մեկին կհաջողվի գտնել իր տեղը կյանքում, հեշտ կամ դժվար, մեկն էլ կորոնի ու չի գտնի: Մեկն էլ չի որոնի, կնայի հանգամանքներին, կգնա՝ հոսանքն ուր տանի: Միշտն այն է, որ մարդը թույլ դիմադրության ճամփով չգնա: Մեզ այդ են սովորեցնում գրքերն ու մեր ուսուցիչները:

Բայց թույլ դիմադրության ճամփով չգնալու համար ուժ պետք է ունենալ: Այդ ուժը ձեռք պետք է բերենք երևի հենց դպրոցում: Մինչդեռ մենք սովորելու փոխարեն որքա՜ն ժամանակ ենք վատնել ու դեռ վատնում ենք փուչ բաների վրա:

Ես հիմա տասնհինգ տարեկան եմ: Տասնհի՜նգ տարեկան... փոքր չեմ ինքնուրույն քայլելու համար:

# ՀՈԳՈՒ ՊԵՐՃՈՒԹՅՈՒՆ



ԿԱՏՅԱ ՓԱՐԻՋՅԱՆ,
9-րդ դասարան

Միշտ աչքի առաջ ունեմ՝ «Եթե գոհարը մարմնի զարդն է, ապա գիտակցությունը հոգու պերճությունն է» խոսքը:

Վերջերս հանդիպեցի մի ծանոթ աղջկա, որը սովորում է «լավ» և «գերազանց» գնահատականներով: Խոսեցինք կենցաղային մանր-մունր բաներից, իսկ երբ անցանք կինոյին, գրականությանը, արվեստին, մեր խոսակցությունն առաջ չգնաց և շուտով բաժանվեցինք: Փողոցում քայլում էի, վերհիշում նրա գեղեցիկ դեմքը, կազմվածքը և հետո Իսահակյանի պատմվածքի տողերը. «Այդքան շքեղության մեջ, այսքան ցնցոտիություն»:

Գուցե խիստ են հնչում այս խոսքերը, բայց ես իմ նկատմամբ ավելի խիստ եմ. «Ինչքա՜ն պիտի շատ սովորես, գոնե մի քիչ բան իմանալու համար»:

ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱԶՅԱՆ

# ՀԵՂԵՂԸ

Կատաղել էր սաստիկ գետը,
Իր ափերից վեր բարձրացել,
Ժայռ ու քար էր բերում հետը,
Բերում ծառեր ջահել ու ծեր:
Բերեց ահա և մի նոր ծառ,
Վրան նստած մի շեկ աղվես:
Անտառով է հեղեղն եկել,
Իսկ խորամանկ շեկլիկը մեր
Տեսել է, որ հնար չկա՝
Նստել է մեծ ծառի վրա:
Գետափերին ծափ ու ծիծաղ,
Ուրախություն առաջացավ,
Տրակտորիստ Սուրենն անվախ
Գետի կեսը լողով անցավ:
Հետո պարան կապեց ծառին,
Տրակտորով ծառը քաշեց,
Շեկոն մեզ էր նայում լռին...
Հենց որ ծառը հասավ ափին,
Մեր շները ափին՝ հա՜ֆ, հա՜ֆ,
Շեկոն ծլկեց, շեկոն փախա՜վ,
Էլ ի՜նչ հաֆ-հաֆ, հաֆ-հաֆ,
հաֆ-հաֆ...

ԽՓՐԱՏ ՍԽՎՔԱՐԵՑԻ

# ԱՆՁՐԵՎ Է ԳԱԼԻՍ

Ծարավել են
Արտ ու արոտ,
Անձրև է գալիս:

Ծառ ու ծաղիկ,
Ծարավել են,
Անձրև է գալիս:

Ծիծաղում են
Արտ ու արոտ
Միմյանց ձայն տալիս.

— Աչքներդ լո՜ւյս,
Տե՛ս, ի՜նչ անուշ
Անձրև է գալիս:

Նկ. ՍԱՐՈ ԿԱԼԵՆՑԻ

*ՎԱՂԻՆԱԿ ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ*

# ԼՈՒՍԻՆԸ

Լուսինն է թիկնել
Քարափի վրա,
Քարերն էլ կարծես
Գառներն են նրա։
Ու թվում է, թե
Հովիվ լուսինը
Ահա կիջնի ցած
Ու տուն կտանի
Գառները նիրհած։

# ՋՐԻ ՆՄԱՆ

Խոտ էր հնձում պապը սարում
Ու այրվում էր ծարավից,
Մեկ էլ փոքրիկ թոռը կժով
Պաղ ջուր բերեց աղբյուրից։

Հոգնած պապը ջուրը խմեց,
Դարձավ խոսքով իր բարի.
— Ապրե՛ս, տղա՛ս, թող քո կյանքը
Ջրի նման երկարի։




# ԱՆՎԱՆՆ ԱՐԺԱՆԻ

Զինվորները ընկնում են նաև խաղաղ ժամանակներում՝ իրենց պարտքը հայրենիքի հանդեպ կատարելիս: Այսպիսի զինվորներից էր Վարդան Կարեյանը՝ Կամոյի շրջանի Սարուխան գյուղից: Տարիներ առաջ, այսօրվա յոթերորդ Ա դասարանին թույլատրվեց ջոկատը կոչել Վարդան Կարեյանի անվան:

Ջոկատը միայն շնորհալիներից ու խելացիներից կազմված չի լինում: Լինում են և՛ ետ մնացողներ, և՛ անկարգապահներ, և՛ որևէ առարկայի մատների արանքով նայողներ, նաև ծույլեր: Այս ջոկատում էլ այդպիսիք կային: Բայց պատկերը, տեսեք, թե ինչպես փոխվեց:

Լսենք, թե ինչ է պատմում ջոկատի մասին ավագ ջոկատավար Անահիտ Ավետիսյանը.

— Դպրոցի պիոներական 11 ջոկատից առանձնանում է Կարեյանի անվան ջոկատը: Քսանյոթ պիոներից տասը գերազանցիկ են, տասը հարվածային և միայն յոթը երեքներ ունեն. այն էլ մեկ կամ երկու առարկայից: Այս ջոկատը մյուսներից տարբերվում է նաև կարգապահությամբ, գործող խմբակներին ակտիվ մասնակցելով, պիոներական գործեր ու զանազան այլ միջոցառումներ հետաքրքիր կազմակերպելով: Մի խոսքով, իր կոչմանը՝ աչքնայինին արժանի ջոկատ է: Դեռ չի պատահել, որ վերցրած պարտավորությունը չկատարի: Անցյալ ուսումնական տարում նրանք պարտավորվել էին ի պատիվ Վ. Ի. Լենինի ծննդյան 110-ամյակի, գերազանցներով սովորել և 110 ծաղկաթմբեր աճեցնել դպրոցի բակում: Կատարեցին իրենց խոստումը, որի համար հրավիրվեցին մասնակցելու շրջանի հոբելյանական շքերթին:

— Դասարանի առաջադիմության և կարգապահության կարևոր պայմանն ի՞նչն եք համարում,— հարցնում ենք Անահիտին:

— Սովորաբար յոթերորդ, ութե-

րորդ դասարաններում շատ փոքրիկ, աննշան առիթները պատճառ են դառնում, որ աշակերտներն իրարից վիրավորվեն, անգամ խռովեն: Բավական է նման մի դեպք աչքաթող անել և մի շաբաթից դասարանի կեսը իրար հետ կգժտվի: Այստեղից էլ ըսկըսվում է անհարգալից վերաբերմունք մյանց նկատմամբ, անտարբերությունը ջոկատի աշխատանքների ու կազմակերպվող միջոցառումների հանդեպ: Փոխօգնության մասին էլ խոսք լինել չի կարող: Ահա թե ինչու աշխատում ենք, որ գժտություններ չլինեն, լինելիս իսկույն հարթում ենք: Իսկ երբ բոլորը հաշտ ու համերաշխ են, հեշտանում է իրար օգնելու, հանձնարարություն տալու և արդյունքի հասնելու գործը:

— Իսկ ինչպե՞ս եք աշխատում նրրանց հետ, ովքեր պարզապես չեն հասցնում:

— Դա նուրբ հարց է: Կան գերազանցիկներ, որոնք չեն կարողանում այնպես օգնել կամ ընդառաջել, որևէ բան բացատրել դիմացինին, որպեսզի նա չվիրավորվի: Ջոկխորհրդի նախագահը, դասարանի ավագը ընտրում են, թե ով ում է նպատակահարմար, որ օգնի, ով ում հետ ավելի հանույքով, փոխադարձ համակրանքով ու սիրով կպարապի:

Կարեյանի անվան ջոկատի պիոներները դպրոցի թիմուրական ջոկատի անդամ են, օգնում, խնամում են անաշխատունակ ծերերին, գյուղի 2 մանկապարտեզի երեխաների համար խաղալիքներ են պատրաստում, բանաստեղծություններ, երգ ու պար սովորեցնում, խաղեր կազմակերպում: «Միլիոն՝ հայրենիքին» օպերացիայի ուղղությամբ պետությանն են հանձնել հինգ հարյուր կիլոգրամ թղթի թափոն և մեկ տոննա մետաղի ջարդոն:

Ահա թե ինչու, երբ դպրոցում էքսկուրսիա կամ կուլտուրական միջոցառում են կազմակերպում, մասնակիցների թվում առաջինը միշտ լինում է Կարեյանի անվան ջոկատը:

*ՎԱՀԱՆ ՄԽԻԱԿՅԱՆ*

# «ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆ ԵՄ ՑԱՆԿԱՆՈՒՄ»

Մի անգամ երկրաչափության դասին Գալինա Սեմյոնովնան ասաց.

— Պատասխանելու կգա... — տիրեց մեռելային լռություն—... Միշա Վետլուգինը:

Բոլորը թեթևացած շունչ քաշեցին... և սկսեցին գրքերը թերթատել: Միշան դողում էր, և իբրև թե աշխատում էր առաջադրանքը «հիշել»:

Գալինա Սեմյոնովնան նրա տագնապը նկատեց:

— Սովորե՞լ ես:

— Այո, իհարկե...

— Այդ դեպքում եկ գրատախտակի մոտ, վերցրու կավիճը... գրատախտակի աջակողմյան կեսը գծով անջատիր քեզ համար, ձախակողմյան կեսում խնդիրը կլուծենք կոլեկտիվ՝ ամբողջ դասարանով:

Միշան օգնություն էր սպասում ընկերներից, բայց իզուր, բոլորը զբաղված էին: «Կորա»,— մտածեց նա:

Անցավ մի քանի րոպե, և թաքուն Միշայի կողմը թռավ «թեորեմը», ծալծըլված թղթիկը ընկավ նրա ձախ ոտքի մոտ: Միշան ուսուցչուհուց աննկատելի, ճարպկորեն վերցրեց այն.

— Պատրա՞ստ ես,— հետաքրքրըրվեց Գալինա Սեմյոնովնան:

Միշան դադարել էր հուզվել, բացեց «շպարգալական», իսկ այնտեղ խոշոր տառերով գրված էր. «հաջողություն եմ ցանկանում»:

*Լենա Վան*
*7-րդ դասարան*
**«Костер»-ից**

# ԽՆՁՈՐԵՆԻՆ ՈՒ ՓԱՅՏԱՀԱՏԸ

ԷԴՎԱՐԴ ՄԻԼԻՏՈՆՅԱՆ

Փայտահատը կացինով
Խնձորենուն մոտեցավ,
Երկար բեղը ոլորեց
Ծառը կտրել ցանկացավ:

Մեկ էլ վերից քարի պես
Խնձորները ընկան ցած,
Կարկուտի պես թափվեցին
Փայտահատի գլխին բաց:

Վա՜յ փայտահատ, փայտահատ,
Ո՜նց է փախչում շնչահատ:

Հաջորդ օրը գլխարկով
Գլուխ-երես փաթաթած
Եվ սղոցը թաքցրած,
Խնձորենուն մոտեցավ
Փայտահատը զայրացած:

Այս անգամ էլ քարի պես
Թռչունները ցած իջան
Եվ ուզածիդ պես մի լավ,
Կտցահարեցին նրան:

Վա՜յ փայտահատ, փայտահատ,
Ո՜նց է փախչում շնչահատ:

Հաջորդ օրը փաթաթած
Գլուխ, երես, ձեռք ու աչք

Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ



# ՏԱՏՆ ՈՒ ԹՈՌԸ

*ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ՀՈՎՆԱԹԱՆ*

Տատը ասում էր. «Նանի՜կ,
Քնի՛ր խաղաղ, երջանի՜կ,
Փակի՛ր աչիկդ, տղա՛ս,
Քնի՛ր, որ շուտ մեծանա՛ս»:
Մեկ էլ տեսա՜ն... ի՜նչ տեսան,
Ծլվլում է երեխան,
Օրորոցի դեմ չոքած,
Ինքը՝ տատիկն է քնած:



Եվ հրացանն վերցրած՝
Խնձորենուն մոտեցավ
Փայտահատը չարացած:

Այս անգամ էլ քարի պես
Մեղուների պարսն եկավ,
Փայտահատի թևքերից
Եվ օձիքից ներս մտավ,
Եվ խայթեցի՜ն, խայթեցի՜ն
Մեղուները բարկացած:
Գցեց սողոց, հրացան,
Ի՜նչ փախչել էր, որ փախավ
Փայտահատը խենթացած:

Վա՜յ փայտահատ բեղդ ցից,
Վաղն է՞լ կգաս կտրես ինձ...






## ՊԱՏՐԱՍՏԻՐ ԻՆՔԴ

ՕԳՏԱԳՈՐԾՎՈՂ ՆՅՈՒԹԵՐ. ըստվարաթուղթ, լվացքի սեղմակ:

ՊԱՏՐԱՍՏԵԼՈՒ ՁԵՎԸ.

Մարդուն նկարել ստվարաթղթի վրա, ներկել ու կտրել: Թևի տեղը համապատասխան չափով կտրել, առանձին կտրած ու ներկած թևը, կտրվածքի միջով անցկացնելով, սոսնձել գլխարկին: Գլխարկը սոսնձել լվացքի սեղմակի մի ծայրին, մարդու գլուխը՝ մյուսին:

Սեղմակն աշխատեցնելիս մարդը կբարևի:



## ՎԻՐԱՎՈՐ ԳԵՏԱՁԻՆ



1945 թվականի ապրիլին Քյոնիգսբերգում մարտարի, հաղթական ավ.արտից հետո մեր զորամասերը կանգ էին առել հանգստի: Մեզ՝ դիվիզիայի շտաբի սպաներիս լուր հասավ, որ քաղաքային կենդանաբանական այգում ողջ է մնացել... գետաձին: Մենք ուղևորվեցինք դեպի քաղաքի կենտրոն: Ահա և կենդանաբանական այգին: Մի քանի օր առաջ այստեղ թեժ մարտեր էին մղվում:

# ԿԵՆԴԱՆԻՆԵՐՆ

## ԱՆՀԱՂԹ ԱՔԼՈՐԸ



Նկ. ԱՆՈՒՇ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԻ

Մեր զորքերը հարձակվում էին Պոլեսյայում: Զինվորների տրամադրությունը բարձր էր: Ֆաշիստները մի ոտք էլ փոխ առած փախչում էին իրենց իսկ այրած գյուղերով ու ավաններով:

Ավտոմատավորն ե ր ի մեր գումարտակն առաջադրանք ստացավ ինչ գնով էլ լինի հրդեհից հրաշքով փրկված հարևան գյուղից դուրս քշել գերմանացիներին:

— Այնպես, որ ֆաշիստական աղտեղության հոտը չմնա գյուղում,— ասաց վաշտի հրամա-

Անցուղիները «հերկված» էին պայթյուններով, շենքերը՝ գնդակներով ծակծկված: Վանդակները դատարկ էին: Ֆաշիստները այստեղ դատապարտվածների հուսահատությամբ դիմադրում էին և իրենց անօգ չարությունը ուղղել էին գազանների դեմ՝ գնդակահարել էին բոլորին: Մեր զինվորները մարտի ժամանակ փրկել և իրենց հովանավորության տակ էին վերցրել երեք կենդանի՝ փորսուղին, եղնիկին ու իշուկին: Իսկ գետաձի՞ն:

Գետաձիերին հատկացված փայտե շինության դարպասները բացված էին կրնկի վրա: Արգելապատնեշի մոտ մի խումբ սպաներ ու զինվորներ էին կանգնած: Բոլորը հետաքրքրությամբ դիտում էին, թե ինչպես է գետաձին անշնորհք շարժումներով փորձում իր վիթխարի մարմինը ընկղմել ոչ մեծ ավազանի ջրի մեջ:

Գազազած հիտլերականները կրակել, վիրավորել էին գետաձիուն: Բայց նա կարողացել էր փախչել գազանանոցից: Ավելի ուշ նրան քաղաքի ծայրամասում գտել էին մեր զինվորները: Գետաձին պառկած էր եղել մի ջրափոսում, վիրավոր և պայթյուններից խիստ վախեցած: Յոթ վերք կար հուժկու կենդանու մարմնի վրա: Մարտիկները զգուշությամբ նրան հասցրել էին կենդանաբանական այգի: Այստեղ էլ նրանով

# ՈՒ ՊԱՏԵՐԱԶՄԸ



նատարը ռազմիկներին:

Մարտը կայծակնային էր: Թշնամուն մենք անակընկալի բերեցինք և մի քանի րոպեում դուրս քշեցինք գյուղից:

Մեզանից վիրավորվեց սերժանտ Ռիչկովը: Ես ու ընկերս նրան հասցրինք առաջին իսկ պատահած խրճիթը: Ավտոմատի հատուկենտ կրակահերթեր էին լսվում հեռու անտառից և գնում մարում արևմուտքում:

Բացելով ճռռացող դուռը՝ մենք հայտնվեցինք մի փոքրիկ կիսախավար սենյակում: Իմ ընկեր Պյոտր Նեստերենկոն աչք ածելով շուրջը, խոր հոգոց հանեց.

— Ի՜նչ լռություն է, է՜:

— Հե՜յ, ո՞վ կա տանը,— ձայն տվեցի ես:

Դույլերը չխկչխկացին, տախտակեղենի զնգզընգոց բարձրացավ և ինչ-որ տեղ մեր ներքևում լսվեց մեկի հուզված ու շնչակտուր ձայնը.

— Կա՛, հարազատնե՜րս, կա՜:

Հատակի երկու տախտակները մի կողմ գնացին և մառանից դուրս ելավ մի յոթանասուն տարեկան սպիտակահեր պառավ:

— Կրակոցներից զգացի, որ մերոնք են գալիս,— ուրախության արցունքները աչքերին ասաց նա:

Մի րոպե լռություն տիրեց: Ու մեկ էլ վառարանի ներսից, ի զարմանս մեզ, լսվեց զրնգուն.

— Ծո՜ւ-ղրո՜ւ-ղո՜ւ...

— Էս ո՞վ էր,— զարմացավ սերժանտ Ռիչկովը:

— Աքլորիկս է,— ժպտաց պառավը:

— Իսկ ինչպե՞ս է այն-

սկսեց զբաղվել բուժակ-անասնաբույժ Վ. Պոլոնս-կին: Հեշտ չէր հսկայա-մարմին կենդանուն բու-ժելը: Բինտով փաթաթել հնարավոր չէր: Մտածե-ցին վիրակապերը սո-սնձել: Մի խոսքով, մեկ ամսից գետաձին ապա-քինվեց: Քաղաքի սո-վետական պարետատու-նը միջոցներ ձեռնարկեց կենդանաբանական այ-գու բնակիչների պահ-պանման համար և նը-րանց հատուկ մթերաբա-ժիններ հատկացրեց:

Շատ ժամանակ է ան-ցել, տարիները հաջոր-դել են մեկը մյուսին: Երբ լինում եմ Կալինին-գրադում, գնում եմ կեն-դանաբանական այգի ու այցելում գետաձիերի հարկաբաժինը:

Զրնգոցով այգու մո-տով անցնում են տրամ-վայները, սուրում ավտո-մեքենաները, իսկ այն-տեղ, կանաչ կղզյակում, մեծ քաղաքի կենտրո-նում, յուրահատուկ լռու-թյուն է: Ծառերի կանաչ սաղարթները կլանում են քաղաքային աղմուկը: Անցուղիներով զբոսնում են մեծերն ու փոքրերը: Այգում բազմաթիվ կեն-դանիներ կան: Եվ էքս-կուրսավարները այցելու-ներին անպայման պատ-մում են այն մասին, թե ինչպես հեռավոր 45 թվականին սովետական մարտիկները փրկեցին ու բուժեցին վիրավոր գետաձիուն:

*Ս. ՎԵՐՆԻԿՈՎ*

# ԿԵՆԴԱՆԻՆԵՐՆ ՈՒ ՊԱՏԵՐԱԶՄԸ

տեղ հայտնվել:

— Հիմա կպատմեմ: Իսկ դու, տղա՛ս, երևում է, վիրավոր ես, հա՞,— իրար անցավ նա:

Ռիչկովին պառկեց-րինք, սեղմակներ դրե-ցինք, վերքը լվացինք, վիրակապեցինք: Այդ ըն-թացքում տատիկը զբաղ-ված էր ինքնաեռով: Վա-ռարանից դուրս թողնը-ված աքաղաղն էլ հաղ-թական քայլվածքով ան-ցուդարձ էր անում սենյա-կում, հպարտությամբ թա-փահարում թևերը:

Երբ նստեցինք թեյի, Ռիչկովը նորից հիշեց-րեց.

— Այդ ինչպե՞ս եղավ, տատի՛կ, որ աքլորը վա-ռարանում հայտնվեց:

— Գերմանացիները գյուղ խուժեցին ու սկսե-ցին թալանը: Ոչ մի հավ չմնաց: Լսեցի, թե ինչ-պես մտան մեր բակը, իսկ աքլորս էլ նրանց տեսնելով լեղապատառ վազեց խրճիթ ու հոպ՝ վառարանի մեջ: Ոչ կեն-դանի էր, ոչ մեռած. սըս-կըվել էր: Գերմանացի-ները սենյակ մտան, տակնուվրա արին ամեն ինչ, հավ ճչոյում էին, գոռ-գոռում.

— Որտեղ՞ս աքլո՞ր:

— Չգիտեմ,— ասում եմ,— ման եկեք: Ոչ մի աքլոր էլ չկա:

Իսկ ինքս դողում եմ. հանկարծ նա վառարա-նում կչարժվի, կամ էլ կկանչի, կսպանեն սրանք ինձ: Բայց, փառք աստ-ծո, ոչինչ էլ չգտան խըժ-ռելու և քոռ-փոշման գնա-ցին: Ես այնպես էի վա-խեցել, որ մոռացա էլ աք-լորիս: Մինչ գերմանացի-ները տեր ու տնօրինու-թյուն էին անում գյուղում, օտար խոսվածք էր լըս-վում, նա ձայն ու ծպտուն չհանեց: Իսկ երբ մերոնք եկան, ինքներդ լսեցիք, ուրախությունից ծուղրու-ղու կանչեց: Երևի հաս-կանում է ով է թշնամի, ով՝ յուրային:

*Ն. ԿՐԱՍԻԼՆԻԿՈՎ*



## ԿԱՐԴԱ ԱՅՍ ԳԻՐՔԸ

# ՀԱՐՑԵՐ ԱՐՎԵՍՏԱՍԵՐ ԴՊՐՈՑԱԿԱՆԻՆ

1820 թվականին Հունաստանի Միլոս կղզում մի գյուղացի՝ Յարգոս անունով, գարնան մի օր վար անելիս գտնում է կնոջ սպիտակ մարմարե արձան: Յարգոսն այդ նվիրում է մի հոգևորականի: Թուրքիայի ֆրանսիական դեսպանի ականջին է հասնում լուրը և նա զինվորական նավով Միլոս է ուղարկում իր քարտուղարին, պատվիրելով ինչ գնով էլ լինի, ձեռք բերել արձանը: Զինվորական նավը տեղ է հասնում այն ժամանակ, երբ արձանը արդեն թուրքական նավ էին բարձրացնում: Բանակցությունները անօգուտ են անցնում, հոգևորականը չի համաձայնում արձանը վաճառել: Բանը հասնում է զենքին: Թուրքերի կարճ դիմադրությունից հետո արձանը ֆրանսիական նավում էր: Ընդհարման ժամանակ, սակայն, արձանը ծովում կորցնում է իր թևերը... Եվ մինչև այսօր Լուվրի թանգարանում կանգնած է նա առանց թևերի, բայց հպարտ իր շռայլ գեղեցկությամբ: Դուք հավանաբար կռահեցիք, թե ինչ արձանի մասին է խոսքը, իսկ եթե ոչ, կարդացեք Սերգեյ Իշխանյանի «Հարցեր արվեստասեր դպրոցականին» գիրքը, որը լույս է տեսել վերջերս «Սովետական գրող» հրատարակչության կողմից: Գրքում դուք կկարդաք համաշխարհային արվեստի այլ գանձերի մասին և դրանց հետ կապված շատ հետաքրքիր պատմություններ: Կիմանաք նաև, թե որտեղ և ինչպիսի հոգատարությամբ են պահվում այդ գանձերից յուրաքանչյուրը:

Գիրքն ունի երկու բաժին՝ հարցերի և պատասխանների:

Հարցերի բաժնում ձեր գիտելիքները ստուգելուց հետո բացեք պատասխանների բաժինը: Այստեղ հակիրճ ու մատչելի լեզվով տեղեկություններ են տրված թե՛ հեղինակների կյանքի ու գործունեության և թե՛ նրանց ստեղծագործությունների մասին:

Գրքում էջեր են նվիրված նաև Հայաստանի պետական պատկերասրահին ու Մարտիրոս Սարյանին:

Գիրքը ավարտվում է «Ծանո՞թ են ձեզ այս թանգարանները» հարցի պատասխաններով: Այս բաժնում դուք կծանոթանաք Էրմիտաժի, Լուվրի, Դրեզդենյան պատկերասրահի և այլ մեծահամբավ թանգարանների հետ:

Գիրքն ընթերցելու ընթացքում, եթե անհասկանալի ու մութ հարցեր մնան, գրեք հեղինակին և նա, իր պատրաստակամությունն է հայտնում լրացուցիչ բացատրություններ տալ:

*ՇՈՒՇԱՆԻԿ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ*



# ՇԱՌԼ ԱԶՆԱՎՈՒՐ

## ԻՆՔՆ ԻՐ ՄԱՍԻՆ

Որևէ մասնագիտական կրթության մասին գաղթականների որդին մտածել անգամ չէր կարող։ Առաջին հերթին անհրաժեշտ էր ապրուստ վաստակել, այն, ինչով էլ հենց զբաղվել եմ 11—12 տարեկանից սկսած։ Բայց երաժշտությունը ինձ շրջապատում էր ամեն կողմից։ Փողոցում, որի բնակիչները մեզ նման գաղթականներ էին, երգն անպակաս էր։

... Դպրոցում տոների առթիվ սովորում էինք ֆրանսիական ժողովրդական երգեր։

1939 թվականին 15-ամյա Շառլը երգի մանկական մրցույթում նվաճեց առաջին տեղը՝ նմանակելով Մորիս Շըվալյեին։

... Ես փնտրում էի ինձ հարմար երգեր ու չէի գտնում։ Սկսեցի ինքս գրել... Երիտասարդ երգահան Պ. Ռոշի հետ պատրաստեցի էստրադային մի ծրագիր... 1946 թվականին Էդիթ Պիաֆը պատահաբար տեսավ մեր երկյակը, դուր եկավ նրան, և նա մեզ առավ իր համերգային ծրագրի մեջ... Եթե խոսելու լինենք ուսումնառության մասին, ապա ամենաարժեքավորն այն էր, ինչ ես ստացա Պիաֆից։ Ես անվերջ բաշխում էի երգերս աջ ու ձախ. «Շառլ Ազնավուրի երգը այսինչի կատարմամբ»,— հայտարարում էին բեմերից։ ...Իսկ ես հարկադրված ելույթ էի ունենում կինոսրահներում՝ սեանսների միջև... Սակայն համբավս տարածվում էր։ Էստրադային հանդիսատեսն սկսեց պահանջել՝ Ազնավուրին բեմ։ Եվ համերգների տնօրենները ստիպված էին զիջել։

Մեծ երեկոյի օրն եկավ...

... Երգի ավարտից հետո իջնում է նախաբեմի հաստ վարագույրը... Հանկարծ ականջիս հասավ բազկաթոռների յուրահատուկ աղմուկը։ «Գնում են»,— անցավ մտքովս... Վարագույրը բարձրացավ։ Ու ես տեսա նրան, պրեմիերաների այդ ահավոր հանդիսատեսին, լուռ կանգնած իմ դեմ։ Ու նոր, նոր միայն ծափ տվին դահլիճը քանդելու աստիճան...

Ես կանգնած եմ ծափերի տարափի տակ, անշարժ, շվարած, արցունքները աչքերիս։ Այո։ Այդ երեկո ես նվաճեցի Փարիզը...

... Ես երբեք չեմ դադարել դերասան լինել։ Երգերն ինձ համար միշտ էլ փոքրիկ թատերախաղեր են։ Ես դրանք բեմադրում եմ, խաղում՝ կատարելով մերթ մի, մերթ միանգամից մի քանի դերեր։ Պատրաստվում եմ ապագայում աստիճանաբար հեռանալ էստրադայից և վերադառնալ կինո ու թատրոն։

... Անցյալն ինձ համար եղել է հարուստ շտեմարան, որից առել եմ թեմաներ, ոգեշնչում, դասեր։ .. Եվ ոչ միայն իմ անցյալը, այլև մի քանի տասնամյակ առաջ օսմանյան ցեղասպանությունից հրաշքով փրկված իմ հայ ծնողների անցյալը։

... Ողջ կյանքումս զգացել եմ իմ ազգային, ընտանեկան արմատները, ինչը շատ կարևոր է արվեստագետի համար։




Նկ. ՍԱՐՈ ԿԱԼԵՆՑԻ

# ՈՍԿԵԾԱՄԻԿ,

ՎԱՀԱԳՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ

Աղջիկը ապրում էր Գլխավոր Փողոցի ետևում թաքնված Խաղաղ Նրբանցքի գանգրահեր ծառերով շրջապատված շենքում: Խաղաղ Նրբանցքը ամենախաղաղն էր քաղաքում, գանգրահեր ծառերը ամենագանգրահերն էին, իսկ Աղջիկը կապուտաչ էր, ոսկեծամիկ ու խռովկան: Բայց դեռ չգիտեր, որ ինքն այդպիսին է (կապուտաչ, ոսկեծամիկ, խռովկան), քանի դեռ չէր տեսել Տղային:

Այնպես պատահեց, որ մի անգամ

առավոտյան Աղջիկը պատշգամբ դուրս եկավ ու ցածում տեսավ Սայլը: Այսինքն, ինչ եմ ասում, Սայլը նա առաջներում էլ էր տեսել, հիմա տեսավ Սայլի վրա նստած Տղային: Փողոցներից մեկում Տղան վազել էր Սայլի ետևից, թըռել նստել ետևի մասում և ոտքերը օրորելով ճամփորդում էր: Երբ Սայլը հավասարվեց շենքին, Աղջիկը տեսավ, որ Տղան այլևս ոտքերը չի օրորում, այլ վերև է նայում: Եվ քանի որ Կաթնավաճառը կաթը խանութ էր տեղափոխում, Սայլը կանգնած էր շենքի առաջ, և Տղան շարունակում էր վերև նայել:

— Հե՜յ,— վերևից կանչեց Աղջիկը,— այդ ո՞ւր ես նայում:

—Արևին,— պատասխանեց Տղան:

Աղջիկը գիտեր, որ անհնար է նայել Արևին այդքան երկար ու այդքան լայն բացված աչքերով, բայց, այնուամենայնիվ, հարցրեց.

— Ինչո՞ւ:

— Որովհետև Արևը ոսկեծամիկ է:

Աղջիկը ինքն էլ չհասկացավ, թե իր հետ ինչ պատահեց, որովհետև առաջին անգամ էր խռովում: Ամեն դեպքում, նա անմիջապես ներս գնաց ու բարկացած մտածում էր. «Ախ այդպե՜ս, Արևը ոսկեծամիկ է: Դե այնքա՜ն նայիր, մինչև որ աչքերդ...» Աղջիկը չշարունակեց միտքը, որովհետև չնայած խռովել էր, բայց չար չէր ու չէր ուզում, որ Տղայի աչքերին որևէ բան պատահի, իսկ իր հայացքը պատահաբար հայելուն ընկավ, և նա զարմանքով տեսավ, որ ինքը ոսկեծամիկ է, նույնիսկ ավելի ոսկեծամիկ, քան Արևը:

«Ա՜յ քեզ բան,— մտածեց Աղջիկը,— իսկ ես կարծում էի իմ մազերը սև-սև են»: Ամբողջ օրը նա հիանում էր իր ոսկե ծամերով, գիշերն էլ համարյա չքնեց, իսկ առավոտյան նորից կանգնած էր պատշգամբում:

Ճուտով Սայլը երևաց, Տղան էլ երեկվա նման նստած էր Սայլի վերջում ու ոտքերն էր թափահարում: Սայլը նորից կանգնեց պատշգամբի տակ, Կաթնավաճառը նորից սկսեց կաթը տեղափոխել, իսկ Տղան նորից անշարժացավ ու վերև էր նայում: Աղջիկն արդեն մոռացել էր, որ երեկ ինքը խռովել է ու նորից կանչեց.

— Հե՜յ, այդ ո՞ւր ես նայում:

Տղան նորից ուզում էր ասել՝ Արևին, բայց այս անգամ Աղջիկն արդեն այնքան ոսկեծամիկ թվաց (Արևից էլ ոսկեծամիկ), որ լեզուն չպտտվեց այդպիսի բան ասի: Եվ ասաց.

— Երկնքին:

Աղջկան թվաց, թե Տղան Երկնքին չի նայում, այլ բոլորովին ուրիշ մի տեղ, որը, ճիշտ է, նույնպես վերևում է, բայց ոչ Երկնքի չափ հեռու, այլ շատ ավելի մոտ, իսկ ավելի ճիշտ՝ պատշգամբում (էլ ավելի ճիշտ՝ իր վրա), բայց, այնուամենայնիվ, հարցրեց.

— Ինչո՞ւ:

— Որովհետև երկինքը կապուտաչ է,— պատասխանեց Տղան:

Այս անգամ Աղջիկը հասկացավ, թե ինչ պատահեց իր հետ, որովհետև երկրորդ անգամ էր խռովում: Նա անմիջապես ներս գնաց, ավելին, նույնիսկ ծածկեց դուռը և բարկացած մտածում էր. «Ախ այդպե՜ս, Երկինքը կապուտաչ է: Դե այնքա՜ն նայիր, մինչև որ աչքերդ...» Աղջիկը դարձյալ չշարունակեց միտքը, որովհետև, միևնույն է, չար չէր, իսկ հայացքը դարձյալ հայելուն

# ԿԱՊՈՒՏԱՉ ԽՌՈՎԿԱՆԸ

ընկավ (բոլորովին-բոլորովին պատահաբար), և նա զարմանքով տեսավ, որ ինքը կապուտաչ է, նույնիսկ ավելի կապուտաչ, քան Երկինքը։

«Այ քեզ բա՜ն,—մտածեց Աղջիկը,— իսկ ես կարծում էի իմ աչքերը սև-սև են»։ Ամբողջ օրը նա հիանում էր իր կապույտ աչքերով (ոսկե ծամերով նույնպես), գիշերն էլ ավելի վատ քնեց, իսկ առավոտյան կրկին կանգնած էր պատշգամբում։

Ճուտով Սայլը սովորականի նման երևաց, Տղան էլ սովորականի նման ոտքերն է թափահարում, հետո Սայլը սովորականի նման կանգնեց պատշգամբի տակ... Մի խոսքով, ամեն ինչ սովորականի նման էր (Կաթնավաճառը կաթ էր տեղափոխում, Տղան վերև էր նայում), Աղջիկն էլ, որ թեև չէր մոռացել, որ երեկ ինքը խռովել է (ինչքան չլինի, երկրորդ անգամ էր խռովել), սովորականի նման կանչեց.

— Հե՜յ, այդ ո՞ւր ես նայում։

Տղան կրկին ուզում էր ասել՝ Երկընքին, բայց այս անգամ Աղջիկն այնքան կապուտաչ թվաց (երկնքից էլ կապուտաչ), որ լեզուն չպտտվեց այդպիսի բան ասի։ Եվ քանի որ նախորդ օրն էլ չէր կարողացել ասել՝ Արևին, այլևս ասելու բան չգտավ։ Բերանը բաց նայում էր վերև, իսկ Աղջիկը, որ գնալով իրեն ավելի ու ավելի կապուտաչ ու ոսկեծամիկ էր զգում, ներս գնաց ու ոչ միայն ծածկեց դուռը, այլև վարագույրները իրար վրա բերեց։ Նորից խռովել էր։ Միշտ է, տանը ինչքան էլ մտածեց, ոչ մի կերպ չկարողացավ գլխի ընկնել, թե այս անգամ ինչու է խռովել, բայց որոշեց, որ եթե խռովել է, ուրեմն, այդպես է պետք։

Ահա այդ օրվանից էլ Աղջիկը ամեն երեկո որոշում է, որ առավոտյան այլևս երբեք պատշգամբ դուրս չի գա, որպեսզի չտեսնի այդ... այդ... Տղայի երեսը։ Բայց միշտ էլ առավոտյան պատահաբար (բոլորովին-բոլորովին պատահաբար) հայտնվում է պատշգամբում։ Տղան ամեն երեկո որոշում է, որ այլևս երբեք Խաղաղ Նրբանցք չի մըտնի, բայց միշտ էլ պատահաբար (բոլորովին-բոլորովին պատահաբար) առավոտյան հանդիպում է Սայլին ու հայտնվում Խաղաղ Նրբանցքում։ Եվ հենց որ նրանք տեսնում են իրար, Տըղայի բերանը բաց է մնում, իսկ Աղջիկը ձևացնում է, թե բոլորովին-բոլորովին ուրիշ կողմ է նայում և բոլորովին-բոլորովին չի նկատում նրան։ Այդպես նայում են նրանք իրար՝ Տղան բերանը բաց, Աղջիկը իբրև թե չնկատելով, հետո բոլորովին-բոլորովին պատահաբար Աղջիկը շրջվում է, ներս գնում, ծածկում դուռը, քաշում վարագույրները անպայման ավելի շուտ, քան Սայլը կշարժվի։ Իսկ երբ Սայլը շարժվում է, Տղան բոլորովին-բոլորովին պատահաբար իջնում է Սայլից ու կանգնում մայթի վրա, Աղջիկն էլ բոլորովին-բոլորովին պատահաբար ետ է տանում վարագույրի ծայրը, որպեսզի համոզվի, որ Տղան այնտեղ չէ, արդեն գնացել է։ Իսկ երբ Տղան վերջապես իսկապես գնում է, Աղջիկը նորից խռովում է ու որոշում, որ այսուհետև ոչ միայն պատշգամբ դուրս չի գա, այլև ետ չի տանի վարագույրի ծայրը, որպեսզի այլևս երբեք-երբեք չտեսնի այդ... այդ... Տղայի երեսը։

Իսկ առավոտյան...

Ինձ թվում է, այլևս կարիք չկա ասելու, թե ինչ է լինում հաջորդ առավոտյան։ Ինձ մնում է միայն ասել, որ մինչև օրս էլ Աղջիկը ոսկեծամիկ է, կապուտաչ ու խռովկան։ Ինչևէ, իմ կարծիքով, այդ օրվանից ոսկեծամիկ են, կապուտաչ ու խռովկան բոլոր աղջիկները, նույնիսկ նրանք, որ առաջին հայացքից թվում է, թե սևահեր են, սևաչ ու խռովել չգիտեն։



# ԿԱՐԱՏԵ՝
## ԴԱՏԱՐԿ ՁԵՌՔ

1978 թվականին մեր երկրում պաշտոնապես կյանքի կոչվեց թվով 52-րդ մարզաձևը՝ կարատեն, ստեղծվեց կարատեի ՍՍՀՄ ֆեդերացիա:

Մեր հանրապետության պատանիների ու երիտասարդների շրջանում կարատեն նույնպես մեծ հետաքրքրություն է առաջացրել: Սակայն չիմանալով միանգամայն լուրջ ու օգտակար այդ մարզաձևի օրենքներն ու սկզբունքները, շատերը կարծում են, թե այն սեփական ուժը ցուցադրելու միջոց է միայն և հաճախ ի չարն են գործադրում իմացած հնարքները:

*Նկ. ՀՐԱՅՐ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ*

Ուրեմն, ի՞նչ է կարատեն:



Լեգենդը պատմում է.

Լեռներից իջած մարդակեր վագրը չարիք էր դարձել փոքրիկ գյուղի համար: Գյուղը դիմում է իր երկու քաջ որսորդների օգնությանը: Որսորդները գնում են այնտեղ, ուր վերջին անգամ տեսել էին վագրին: Նրան հրապուրելու նպատակով ծառին գառ են կապում, իրենք դարան մտնում:

Ժամանակն անցնում է, բայց վագրի փոխարեն բացատում սպիտակամորուս մի ծերունի է հայտնվում: Որսորդները զգուշացնում են նրան, որ շուտ թաքնվի, այլապես վագրը կարող է հոշոտել: Ծերունին ժպտալով ասում է, որ ինքն արդեն սպանել է վագրին: Որսորդները խելագարի տեղ են դնում ծերունուն. չեն հավատում, թե այդ հալից ընկած ծերուկը կարող էր ամեհի գազանին սպանել: Բայց գընում են նրա ցույց տված ուղղությամբ, արահետի վրա տեսնում անշնչացած վագրին: Նրանք վագրի վրա ոչ մի վերք չեն նկատում, իսկ շարժելուց հետո տեսնում են ողնաշարը կոտրված է: Վերադառնալով գյուղ՝ պատմում են այդ հրաշքի մասին: Բնակիչներից մեկն ասում է, թե ինքը ճանաչում է ծերունուն և ավելացնում, որ նա կարատեի մեծ վարպետ է:

Լեգենդը՝ լեգենդ, բայց իրականում շատերը կարդացած կամ հեռուստատեսությամբ տեսած կլինեն, թե կարատեիստներն ինչպես են բաց ձեռքի հարվածով կոտրում իրար վրա դրված մի քանի աղյուս կամ 10—15 սանտիմետր հաստությամբ տախտակը:

Մինչև օրս էլ շատերը գտնում են, որ կարատեն ճապոնական ծագում ունի: Սակայն կարծիքներ և զգալի ապացույցներ կան, որ այդ մարզաձևի հայրենիքը Հնդկաստանն է: Բացառված չէ, որ կարատեն միաժամանակ ծագել է մի քանի երկըրներում և համատեղված, կատարելագործված մուտք գործել Ճապոնիա:

Ֆեոդալների կողմից զրկված լինելով զենք կըրելու իրավունքից, ճապոնացի գյուղացիները իրենց շահերը պաշտպանում էին կարատեի միջոցով: Այստեղից էլ բանի ծագումն ու ստուգաբանությունը. ԿԱՐԱ-դատարկ, ՏԵ—ձեռք:

Տիրապետելով պաշտպանվելու և հարձակվելու նուրբ արվեստին, կարատեիստն իր վարպետությունը ցուցադրում է միայն մրցումների ժամանակ ու մարզասրահներում, իսկ անհրաժեշտության դեպքում՝ պաշտպանվելիս կամ թույլերին օգնելիս:

Կարատեի կանոններին քնորոշ են մեծահոգությունը, մարդասիրությունը, շիտակությունը ու՛ ասպետությունը: Անվայել ու անազնիվ արարքները, նախանձը, ցուցամոլությունը անհարիր են կարատեիստին. նա չպետք է խմի ու ծխի, պետք է ուշադիր ու զգայուն լինի գեղեցիկի հանդեպ: Կարատեիստը անսահմանորեն նվիրված է իր դպրոցին, մարզիչին և ընկերներին: Իսկ պարապմունքների և հաջողության հասնելու ամենակարևոր նախապայմանը կենտրոնանալն է: Մարզադահլիճ մտնող կարատեիստն իր բոլոր հոգսերը, մտահոգությունները, կողմնակի մտածումները թողնում է դրսում և դահլիճ մըտնում խաղաղված ու հանգիստ:

Մրցելիս կարատեիստը այնքան կենտրոնացած ու համոզված է լինում, որ հաղթանակի համար բավական է մի լավ հարված: Ահա թե ինչու նրանց մրցապայքարը շատ կարճ է տևում:

Մեր երկրում, ինչպես նաև ամբողջ աշխար-

հում, ավանդական կարատեն որոշակի փոփոխությամբ է կիրառվում: Եթե մարզիկներին թույլատրվեր իրար հարվածել ամբողջ ուժով, ապա նրանք շատ լուրջ վնասվածքներ կհասցնեին միմյանց:

Մրցումների ու պարապմունքների ժամանակ նրանք հարվածը մինչև վերջ չեն հասցնում: Կարատեիստներին արգելվում է վեճերի ու կռիվների մեջ մտնել պատահական մարդկանց հետ: Նրանք խաղաղասեր բնավորություն պետք է ունենան և երբեք ընդհարումների տեղիք չըպետք է տան:

Կարատեի այբուբենին, այսինքն, նախնական գիտելիքներին տիրապետելու համար պահանջվում է երեք տարուց ոչ պակաս ժամանակ: Իսկ մարզիկի վարպետության աստիճանը որոշվում է մեջքին կապած գոտու գույնից: Սկսնակները կապում են սպիտակ գոտի, իսկ վարպետները՝ սև:

Ի տարբերություն մյուս մարզաձևերի կարատեով կարող են պարապել և լավ արդյունքի հասնել ոչ միայն պատանիները ու երիտասարդները, այլև միջին տարիքի մարդիկ, անգամ ծերերը:

# ՄԻԿՐՈՏԱՐՐԵՐԻ ԿԵՆՍԱԲԱՆԱԿԱՆ ԴԵՐԸ

Մենդելեևի աղյուսակի համարյա բոլոր քիմիական տարրերը հանդիպում են մարդկանց և կենդանիների օրգանիզմներում, իսկ արյունն էլ իր աղային բաղադրությամբ զարմանալիորեն հիշեցնում է օվկիանոսի ջուրը: Այս իրավունք է տվել գիտնականներին ենթադրելու, որ կյանքը իր սկզբնական ծագումով սերտորեն կապված է համաշխարհային օվկիանոսի, իսկ քիմիական բաղադրությամբ՝ երկրի կեղևի հետ: Մարդու օրգանիզմի պարունակած բազմազան նյութերը, այդ թվում նաև՝ ոսկին և արծաթը, բոլորը միասին վերցրած, ամերիկացի գիտնական Պարչեսի հաշվելով, հազիվ 5 դոլլար արժենան: Միայն թե այդ նյութերը օրգանիզմում գտնվում են շատ բարդ միացությունների ձևով և նրանց արհեստական ստացումը ըստ Եյլյան համալսարանի պրոֆեսոր Մորովիցի, կարժենար կես միլիարդ դոլլար:

Մարդու հիմնական մասսան կազմում են ածխածինը, ջրածինը, թթվածինը, ազոտը, քլորը, նատրիումը, կալիումը, կալցիումը և այլն: Սրանցից բացի, օրգանիզմում գտնվում են նաև մի շարք տարրեր, որոնց ընդհանուր քանակը շատ չնչին է և կազմում է մարմնի քաշի միայն 0,01-ից մինչև 0,06 տոկոսը, որի պատճառով էլ դրանք ստացել են միկրոտարրեր անունը: Դրանցից հիշատակելու արժանի են պղինձը, ցինկը, մանգանը, ալյումինը, երկաթը, ֆտորը, կոբալտը, մոլիբդենը և այլն, և այլն: Չնայած աննշան չափերին, դրանց նշանակությունը շատ կարևոր է օրգանիզմի համար, քանի որ կենսաբանական մեծ ակտիվության շնորհիվ մասնակցում են օրգանիզ-

մում տեղի ունեցող գրեթե բոլոր երևույթների ընթացքին: Օրինակ՝ պղնձի քանակը մարդու օրգանիզմում հասնում է 100 մգ-ի և թվում է, թե այդ չնչին չափը հազիվ թե որոշակի դեր խաղա:

Սակայն, երբ այն կրճատվում է մեկ երրորդով, խախտվում է արյունաստեղծման պրոցեսը, ընկնում է օրգանիզմի բնական դիմադրողականությունը ախտածին գործոնների նկատմամբ և այլն: Աննշան է նաև ալյումինի քանակը, բայց այն մասնակցում է մաշկի, ոսկորների և շարակցական հյուսվածքի կառուցմանը: Կարծիք կա անգամ, որ երբ հնում մարդիկ օգտվել են մեծ քանակությամբ ալյումին պարունակող կավե ամանեղենից, ավելի խոշոր են եղել: Միջին դարերում, երբ անցել են մետաղյա սպասքի, «մանրացել են», իսկ այժմ էլ ալյումինե ամանեղենի լայն տարածման հետևանքով նորից նկատվում է մարդկանց միջին հասակի ավելացում, այսինքն՝ ակսելերացիայի երևույթ: Միկրոտարրերի բաշխումը օրգանիզմում անհավասարաչափ է: Այսպես, օրինակ՝ պղինձը շատ է լյարդում, ուղեղում և երիկամներում, ցինկը՝ սեռական և ենթաստամոքսային գեղձերում, մանգանը՝ ոսկրային հյուսվածքներում: Դրանց քանակությունները օրգանիզմում գտնվում են փոխադարձ կախման մեջ, տարեց մարդկանց օրգանիզմում դրանց քանակությունները կրճատվում են:

Հետազոտությունները պարզել են, որ մարդը օրական ծախսում է 10 մգ ցինկ, 2 մգ պղինձ, 10 մգ մանգան, 15 մգ երկաթ, 0,2 մգ կոբալտ և այլն: Ծախսված նյութերը նրա օրգանիզմում վերականգնվում են սննդամթերքների հաշվին, նախ կուտակվելով լյարդում, ապա այդ պահեստից առաքվելով դեպի մյուս հյուսվածքները «ըստ պահանջի»: Միկրոտարրերով առանձնապես հարուստ են բուսական ծագում ունեցող սննդամթերքները, ինչպես օրինակ՝ լոբին, սխտոր, կարտոֆիլը, սոխը, կաղամբը, սեխը, դդումը, սպանախը, նույնպես և մսեղենը:

Հետևաբար դրանց օգտագործումը սննդի մեջ ապահովում է օրգանիզմին անհրաժեշտ և անփոխարինելի միկրոտարրերով, լրացնելով դրանց պակասը և ապահովելով ծախսը:

*Վ. ԽԱՉՈՅԱՆ*
*բժիշկ, կենսաբանության թեկնածու*

Հայկական բնաշխարհի ոչ մի բուժիչ բույս այնպիսի ժողովրդականություն չի վայելում, ինչպես լոշտակը: Դդմազգիների ընտանիքին պատկանող այս բազմամյա, սողացող խոտաբույսը տարածված է Լոռիում, Շիրակում, Իջևանում, Ապարանում, Սևանի ավազանում, Արարատյան դաշտում, Վայքում, Մեղրիում: Աճում է խոպան, քարքարոտ, լուսավոր հողակտորներում, քարացրոններում, ավերակներում և այլուր: Հանդիպում է հանրապետության ցածրադիր շրջաններում, հասնելով մինչև լեռնային գոտի:

Տերևները բլթակավոր են: Ծաղիկները նման են դդումի ծաղիկներին, դեղին են, հինգ միաձույլ պսակաթերթիկներով: Պտուղը գնդաձև է, մուգ սևակապույտ: Արմատները հաստացած են, կարող են հասնել 5—6 և ավելի կիլոգրամի: Որոշ արմատներ խիստ ճյուղավորված են և հաճախ մարդու մարմնի ձև են ունենում:

Հայաստանում տարածված են լոշտակի երկու տեսակներ՝ սպիտակը և երկտունը:

Սպիտակ լոշտակը (բրիոնիա ալբա) դեռ հնուց հայտնի է որպես հրաշալի դեղամիջոց,

## Դպրոցականի «Կարմիր գիրք»

# ԼՈՇ-ՏԱԿ



բուժիչ բույս: Վերջին տարիներին լոշտակը համեմատում են «Կյանքի արմատի»՝ ժենշենի հետ (պանաքս ժենշեն) և նույնիսկ «հայկական ժենշեն» են անվանում: Դա, իհարկե, միանգամայն սխալ է, քանի որ լոշտակը ժենշենի հետ ոչ մի ազգակցական կապ չունի:

Ժողովրդի մեջ տարածված է, որ իբր լոշտակը բուժում է համարյա բոլոր հիվանդությունները, համենայն դեպս, առնվազն 70—75 հիվանդություն: Դա նույնպես չափազանցություն է, քանի որ ոչ ոք ճշգրիտ կերպով չգիտե, թե իրականում քանի հիվանդություն կարող է բուժել լոշտակը: Հայտնի է միայն, որ դարեր ի վեր այս արժեքավոր բույսով զբաղվել են մեր բնագետ բժիշկները՝ Ամիրդովլաթը, Մխիթար Հերացին և մյուսները, որոնք այդ մասին բազմիցս հիշատակել են իրենց մատենագրական աշխատություններում:

Իսկ իրականում լոշտակը հայկական ժողովրդական բժշկության բնագավառում դարեր շարունակ օգտագործվել է հոդացավի, աչքի և սրտային հիվանդությունների բուժման, որպես բաց վերքերը շուտափույթ կերպով ապաքինելու միջոց: Հայտնի է եղել, որ լոշտակի արմատանյութը նպաստում է արյան ճնշման իջեցմանը: Ներկայումս այս բոլորից բացի, լոշտակը օգտագործվում է նաև հեմոպատիայի բնագավառում:

Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի բուսաբանության ինստիտուտի հումքի լաբորատորիայում մանրազնին ուսումնասիրվել է լոշտակի քիմիական բաղադրությունը: Պարզվել է, որ այս բացառիկ արժեքավոր բույսը պարունակում է մի շարք արժեքավոր բուժիչ նյութեր:

Լոշտակի արմատները պարունակում են ստերոլներ, գլյուկոզիդներ (հատկապես բրիոնին և բրիոնիցին): Տերևներում հայտնաբերվել է մեծ քանակությամբ վիտամին «C»: Արական ծաղիկներում պարունակվում է վիտամին «E» կարոտին: Բույսի վեգետատիվ օրգաններում հայտնաբերված են նաև մեծ քանակությամբ ազոտ պարունակող նյութեր, ինչպես նաև եթերային յուղեր, որոնք ունեն մանրէասպան հատկություն:

Երկտուն լոշտակը հանդիպում է Վայքում, Լոռիում, Շիրակում, Սևանի ավազանում: Անում է խոպան տարածություններում, միջնակներում, քարքարոտ ու ժայռոտ հողամասերում: Բարձրանում է մինչև մերձալպյան գոտին:

Այս տեսակը ևս օժտված է մի շարք բուժիչ հատկություններով: Պարունակում է գլյուկոզիդներ, այդ թվում՝ դառը բրիոմարիդ, բրիոնիդին, որոնք վտանգավոր նյութեր են, քանի որ կարող են կաթվածահար անել կենտրոնական նյարդային սիստեմը:

Ժողովրդական բժշկության մեջ երկտուն

լոշտակի արմատային մզվածքն օգտագործվում է որպես միզամուղ և լուծողական, շնչառական օրգանների հիվանդությունների՝ պլևրիտի, բրոնխիտի, տոնզիլիտի բուժման համար:

Մեր հանրապետության բնակչությունը քաջատեղյակ լինելով լոշտակի այս երկու տեսակների բուժիչ հատկություններին, անխնա և անպլանային ձևով մթերում է դրանք, առանց հաշվի առնելու եղած բուսական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման անհրաժեշտությունը: Դրա հետևանքով վերջին տարիներին լոշտակի բուսուտները արագորեն ոչնչանում են: Եթե այսպես շարունակվի, ապա մի քանի տարի հետո հատկապես սպիտակը իսպառ կվերանա մեր հանրապետության տարածքից:

Պատանի բնասերները չպետք է թույլ տան այդ բանը: Անհրաժեշտ է մոբիլիզացնել բոլոր ուժերը, մեր հանրապետության բոլոր դպրոցականների ջանքերը, այս խիստ արժեքավոր և հազվագյուտ բուսատեսակի պահպանությունը պատշաճ հիմքերի վրա դնելու համար:

*ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*
*կենսաբանության դոկտոր, պրոֆեսոր*

# ՇԱՄԱՆԻ ՇՆՈՐՀՔԻ

*ՎԻԿՏՈՐ ՀՈՎՍԵՓՅԱՆ*



# ԱՐՋԸ ԵՐԱԺԻ՞ՇՏ

*ՀԱԿՈԲ ԳՈՒՐՈՒՆՅԱՆ*

●

— Հայրի՛կ, ես էլ եմ հետդ գալու:

— Չէ՛, Ջորի՛, հեռու եմ գնում:

— Ես չեմ հոգնի, քեզ էլ կօգնեմ...

Հայրը ժպտաց առատ բեղերի տակից:

— Գիտեմ, կօգնես, բայց...

— Հայրի՛կ, ես էլ փոքր չեմ,— այնքան սրտալի ասաց, որ հայրն էլի ժպտաց:

— Դե լավ:

Պաշարները շալակներն առան, մեծ մոմլաթ էլ վերցրին, որ անձրևի

# ՈՒ ԾԱՂԻԿՆԵՐԻ ՄԱՍԻՆ

*Նկ. ՄԿՐՏԻՉ ԿՈՊՅԱՆԻ*

**Ամառ** էր: Պապս բոստանն էր ջրում, ես օգնում էի նրան: Առվակի տաքուկ ջուրը թողնում էինք ծառերից մեկի վրա: Հողը ծծում էր ու պղպջակներ տալիս: Պապիս աչքերից էլ հրճվանքի պղպջակներ էին ելնում:

— Տե՛ս, ո՛նց է խըմում, ծարավ է, պապակ... տոչոր... խմի՛ր, խմի՛ր... մի լա՛վ խմիր... չես հագենում, հա՞...

Հետո երբ ջուրը լճանում էր.

— Կշտացա՞ր... հա՞... էլ չե՞ս ուզում... տես քիչ չլինի...— նա ծառի հետ խոսում էր ինչպես ինձ հետ:— Հիմա բա՛ց արա ճանապարհը, թող գնա այն արևածաղկի վրա, տես ո՛նց է նայում, ծարա՛վ է, ծարա՛վ, բա՛ց, թող նրան հասնի,— ասում էր ինձ:

Եվ ոչ միայն իր տընկած ծառերի ու իր ցանած բանջարեղենի ու ծաղիկների, այլև բոստանի ցանկապատի տակ եղած եղինջների, փշերի, ագռավաթփերի, ավելուկների, տատրակների հանդեպ էլ էր գթառատ ու սիրալիր:

Բահով ջուր էր ցանում նրանց վրա.

— Հովացե՛ք, լողացե՛ք, հա՛... Ամեն ծաղիկ իր հոտն ունի... Ամեն ծաղիկ՝ իր ցավն ու երգը... Սրանք էլ մեռնում են: Եթե մեռնում են, նշանակում է ապրել են: Եթե ապրել են, նշանակում է զգացել են: Եթե զգացել են, նշանակում է ուրախացել ու տխրել են, սպասել են, հիացել, հիասթափվել: Մարդու պես են, թե չէ ինչո՞ւ են մարդկանց անուններով կոչվում՝ Վարդ, Հասմիկ, Մեխակ, Շուշան...

... Մի օր էլ պապս անթև շուպիկով նստել է մարագի պատի տակ ու եղինջի փնջով ծեծում է ոտքերն ու թևերը:

— Ա՛յ պապ, գժվե՞լ ես,— սարսափած հարցնում եմ ես, պատկերացնելով, թե ինչ ցավ ու մրմուռ կարող է պատճառել եղինջի յուրաքանչյուր հպում:

— Բալա՛, էսօր մի քիչ թուլություն եմ զգում, տաքություն ու դող... Ե-

---

դեպքում պաշտպանվեն: Հայրը որսորդական հըրացանն ուսը գցեց (անտառապահը միշտ զինված է լինում) և ճամփա ընկան:

Ապրիլը նոր էր բարձրացել լեռները: Տեղ-տեղ ձյունը դեռ պառկած էր: Բնությունն արթնանում էր, ծառերը բողբոջակալել էին: Աղբյուրների խոխոջ, գետակների խշշոց, նոր բացված ձնծաղիկ՝ առվակների, գետակների ափերին:

— Կյանքը նորոգվում է, Ջորի՛...

— Ինչքան լա՛վ է անտառը, հայրի՛կ:

— Բա, իհա՛րկե, Ջորի՛: Ես ուզում եմ, որ ինձանից հետո մեր այս անտառների պահապանը դու լինես:

— Ինչու՞ քեզանից հետո, հայրի՛կ, քեզ հետ միասին:

Հայրն ախ քաշեց.

— Ասում ես էլի՛... Մեծանաս՝ մյուսների նման դու էլ կչվես քաղաքները:

— Չեմ չվի, հայրի՛կ, կտեսնես:

Հոր դեմքը պայծառացավ:

— Անտառը կյանք է, Ջորի՛, ուրախություն, երջանկություն:

— Թռչունների բներից էլ ձվեր չեմ հանի...

Հայրը ծիծաղեց:

— Իհարկե, մեծ կլինես:

դիշը գրում է... Ա՛յ, բժշկական ասեղի պես սրսկում է,— հանգիստ ավելացնում է նա, ցույց տալով դաղածի հետքերը մարմնի վրա։— Ամեն բույսի մեջ մի հունար կա, Շամանից են գողացել։ (Թե ով է Շամանը մի քիչ հետո կասենք)։ Շամանի դեղերից են օգտվում թռչունները ու գազանները... Պիտի ճանաչես, իմանաս...

... Ընձախոտ կա, արջընընկույզ, հավկտենի, գայլախոտ, ուղտափուշ, շան խաղող, ճնճղապաշար, առյուծածաղիկ, իշառվույտ, եզան լեզու, ագռավաթռիփ, կատվախոտ... Ինչո՞ւ են այդպես կոչվում, մի բան կա ախար... Կենդանիներն ու բույսերը ճանաչում են իրար, խոսում են իրար հետ, օգնում ու հնգում իրար մասին։ Էշը որ էշ է, բանգի չի ուտում։ Հասկանում է նրա լեզուն։ Մոտենում է, ասում.

— Բանգի, քեզ պետք է ուտեմ...

Բանգին իր բույրով պատասխանում է.

— Ա՛յ էշ, չփորձես, կխելագարվես, Շամանի ամենաուժեղ թույնը իմ մեջ է։ Էշը որ էշ է, հասկանում է ու չի ուտում։

...Շատ ու շատ առաջ աշխարհում եղել է մի իմաստուն բժիշկ Շաման անունով։ Սա մեռնելուց առաջ որոշել է իր դեղերը թաքցնել, որպեսզի մարդիկ չվերցնեն բժշկություն անեն։ Սրտի դեղ, ցավամոք, շնչառության դեղ, տաքության, լեղամուղ դեղ, արյան ճնշման, գլխացավի, վիրամոք և այլն... Տարել է ամեն դեղը մի տեղ թաղել, բայց դաշտում մի ծաղկաշատ տեղ պառկել ու մեռնելուց առաջ փորձել է հիշել, թե որը որտեղ է թաղել... Վերհիշել է ու բարձրաձայն կրկնել, առանց կասկածելու, որ լսող կլինի։ Ծաղիկները լսում են։ Եվ երբ Շամանը մեռնում է, ծաղիկներն իրար են անցնում, ամեն մեկը մի կողմ է վազում գտնելու Շամանի գաղտնիքներից մեկը, որպեսզի դրանք անհետ չկորչեն... Գնում ու գտնում են, որը շատ, որը քիչ, ամեն մեկը՝ մի դեղ... Կուժկռտրուկը սրտի դեղն է գտնում, սխտորն ու ճնճղապաշարը՝ արյան ճնշման, մասրենին ու ճնճղապաշարը՝ լեղամուղ դեղը, ուրցն ու տատրակը՝ շնչառու-

— Չէ՛, հիմա՛ էլ չեմ հանի։ Իսկ որ մեծանամ, քո հրացանի պես մի հրացան էլ ես ուսիս կառնեմ... անտառի ոչ մի կենդանու վրա չեմ կրակի, միայն որսագողերին կվախեցնեմ։

— Լավ կանես, Զորի՛ջան։

Հայրը ուրախ-ուրախ, ծոցատետրը մեկ-մեկ հանում էր և նշումներ անում։

Խորանում էին անտառի մեջ ժայռապատ լեռների ստորոտներով, գնում այնպիսի վայրեր, որտեղ մարդու ոտք չէր դիպել։

Մեկ էլ ինչ-որ զնգոց լսեցին ու կանգ առան։

— Չլինի՞ մեկը ծառ է կտրում,— հայրն ըզգաստացավ։

Փայտ կտրելու ձայն չէր... Նվագի էր նմանվում։

Հայրը որդու ականջին կամաց ասաց.

— Սուս ու փուս գնանք։

Շունչները պահած գնացին։ Ձայնը գալիս էր մոտիկից։ Ծառերի ետևից ուշադիր նայեցին։ Ոչինչ չէր երևում։ Կուզեկուզ հասան թփուտներին։

թյան, եյակը՝ քրտնաղե-
ղը, կակաչը, բանգին ու շիկատակը՝ ցավամոքիչ թմրադեղերը...

Աշնան վերջերին պապիս սնդուկը լեցուն էր չորացրած բույսերով, ծաղկարմատներով ու ծաղկասերմերով: Մի ֆսխթական հերբարիում. ավելուկ, եզան լեզու, դաղձ, անթառամ, պանուկ, ուռենու կեղև․․ Իսկ երբ մոտենում էր ձմեռը, սկսվում էին աշնանավերջի ուժեղ եղյամները, գնում էր գյուղից բավական հեռու սարը, մի գիշեր տուն չէր գալիս, հաջորդ օրը երեկոյան վերադառնում էր՝ բերելով մասուր, վարդենու արմատներ, վայրի չամիչ...

— Ձմռանը դեղի համար պետք կգա... մեզ, հարևաններին, գյուղացիներին, բժշկին...

Ձմռանը նրա պղնձյա պսպղուն թեյնիկի թեյը համարյա արնագույն էր, որի մեջ հազիվ նշմարվում էին մասուրի հատերն ու մասրենու արմատների մատնաչափ կտորները:

— Սխտորը թալիսման է, հարբուխի դևը նրանից օխտ վերստ հեռու է փախչում,— ասում էր նա:

Եվ տարին բոլոր նրա շորերից ուրցի ու դաղձի հոտ էր գալիս:

... Հիմա ես ծաղիկների մեջ տեսնում եմ կենդանություն, և կարծում եմ, որ ծաղիկները տեսնում, լսում ու զգում են ինչպես մենք, ու պապիս շունչը խառնված նրանց, ապրում է նրանց մեջ:

Զնգոցը բոլորովին մոտերքից էր գալիս:

Հայրը մեկ էլ գլուխը բարձրացրեց և ի՜նչ տեսավ. արջը ծառի երկար ու բարակ մի ճյուղ թաթերի մեջ առած, ձըգում է ու բաց է թողնում, և փայտը ձայն է արձագանքում երաժշտական կամերտոնի նման:

Հայր ու որդի զարմացած նայում են իրար:

Արջը երաժշտությու՞ն է լսում, հրճվում զնգոցի ելևէջներով: Փայտը ձըգելուց ու բաց թողնելուց հետո ի՜նչ լարվածությամբ նա ականջ է դընում գլուխն անշարժ պահած, և այնքան էր տարված, որ չէր տեսնում հորն ու որդուն, որոնք ծառերի ետևը թաքնված, հրճվում էին արջի այդ երաժշտախաղով:

# ԱՎԻԱՑԻԱՅԻ ԱՐՇԱԼՈՒՅՍԻՆ

△ 1913 թվականին, վիացիոն ամսագրերից մեկում հայտնվեց անսովոր մի հայտարարություն.

«Հունիսի սկզբներին կկայանա արագության հետաքրքիր մրցություն աէրոպլանի և... գնացքի միջև: Մրցությանը կմասնակցեն. մի կողմից՝ հաղորդակցության ճանապարհների մինիստրի ընկեր, պրոֆեսոր Շչուկինը, որը կվարի «Մոլնիա» նոր շոգեքարշը, մյուս կողմից՝ ավիատոր Ի. Ի. Սիկորսկին, իր նոր «Իլյա Մուրոմեց» տիպի հոյակապ աէրոպլանով: Շոգեքարշի և աէրոպլանի մրցավազքը նախատեսվում է անցկացնել Պետերբուրգից մինչև Բոլոգոյե կայարանը»:

△ 1912 թվականին, օդագնացությանը վերաբերող հրատարակություններից մեկը հաղորդում է.

«Ռեյմս քաղաքի մոտ գտնվող օդանավակայանից թռչում էր մի օդաչու աշակերտ: Օդանավակայանի սահմաններից դուրս, շարժիչի կանգի պատճառով նա ստիպված վայրէջք կատարեց: Եվ հենց իջավ մեքենայից, որ սյտոստակը գործի գցի, շարժիչը սկսեց աշխատել և աէրոպլանը օդ բարձրացավ: Մենակ օդում մնալով մոտ 20 րոպե, աէրոպլանը ետ վերադարձավ օդանավակայան, ուր և վայրէջք կատարելիս ջարդուփշուրդ եղավ:



# ՍՈՃՈՒՏՈՒՄ

Ֆլորիդայի (ԱՄՆ) Իվերգլեյդ այգում, թռչնաբան Ֆրեդերիկ Քենտ Տրուսլովը, լուսանկարչական ապարատը ձեռքին, օրեր շարունակ հետևում էր փուփուլավոր փայտփորիկների զույգի կյանքին: Տեսել էր, թե ինչպես նրանք փորել են իրենց բույնը չոր ու բարալիկ մի սոճու բնի մեջ, իսկ այժմ մանրակրկիտ հետևում էր նրանց թուխս նստելու աշխատանքին, արձանագրելով հերթափոխության ժամկետները: Այդ օրը նա նշել էր. «Հանգիստ երեկո, ժամը 14.20-ին արուն ձվերի վրա փոխարինում է էգ թռչնակին: 16 րոպե անց,— նկարագրում է այնուհետև Տրուսլովը,— ուժգին ճայթյունն ու շըրըխկոցը խանգարում է անտառի անդորրը»,— սոճին կոտրվել էր այն մասից, որտեղ փայտփորիկի բույնն էր: Իրենց ջանասիրությամբ թռչնակները վնասել էին ծառը:

Անսպասելի աղետից սաստիկ հուզված, էգ թռչնակը սկսում է թըռչկոտել ծառի կանգուն մասի և գետին տապալվածի միջև: Մի քանի րոպեից, կարծես հասկանալով անելիքը, մըտնում է տանիքից զրկված բույնը և ի զարմանս թռչնաբանի, դուրս է գալիս մի ձու կտցով պահած և թռչում է: Կարճ ժամանակից վերադառնում է՝ նույն ձևով տանելով երկրորդ, ապա և երրորդ ձուն: Ամբողջ գործողությունը, ծառի փլուզումից մինչև վերջին ձվի փոխադրումը, տևում է ընդամենը 16 րոպե:

▲ Աղետը դեռևս հեռու է. արուն պատրաստվում է թուխս նստելու հերթափոխի:

Խարխուլ բույնը ջարդվեց իրենց իսկ պատճառով: ▼





Կա՛, այնուամենայնիվ, մի ելք... ▶



◀ Եվ, ահա, ի զարմանս թռչնաբանի, փայտփորիկը հայտնվում է ձուն կտցով պահած։



Ձուն հենելով կրծքին, փայտփորիկը այն առավել հարմար դիրքի է բերում։ ▶

Տրուպովը հաստատում է, որ վերջին 130 տարվա ընթացքում, մասնագիտական գրականությունը հաղորդում է միայն երկու նման դեպք, այն էլ՝ անապացույց, այդ իսկ պատճառով համարվել են որպես անհավանական ու մոռացվել։ Սա առաջին դեպքն է, որ բարեբախտաբար, նկարչական ապարատի օգնությամբ, թռչունների աշխարհի այս անսովոր երևույթը դարձել է գիտության համար հավաստի։

Թարգմ.՝ ՏԻԳՐԱՆ ԴԱՐԲԻՆՅԱՆԻ

Գործողությունը կրկնվեց երկրորդ, ապա՝ երրորդ ձվի համար։ ▶







ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱ-ԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Հասցեն՝ 375015, Երևան 15. Կարմիր բանակի փողոց 15։
Հեռախոսներ՝ 56-32-72, 58-05-39, 58-14-96։

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.


# № 5 • ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ • 1981



Շապիկի առաջին էջը՝ ԴԱՎԻԹ ՆԵՐՍԻՍՅԱՆԻ


Գլխավոր խմբագիր՝
ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝
ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատ. քարտուղար), ԽՍԱՅԱՆ Վ., ԹԱՂԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍԱՄԲԱՏՅԱՆ Կ.

Տեխ. խմբագիր՝
Հ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ
Վերստուգող սրբագրիչ՝
Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Հանձնված է արտադրության 20.2.1981 թ.: Ստորագրված է տպագրության 6.5.1981 թ.: ՎՖ 10220: Թուղթ օֆսեթ, $70\times108^{1}/_{16}$: Տառատեսակ՝ Նորք: Օֆսեթ տպագրություն: 3,0 պայմ. մամ., 3,1 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 61562: Պատվեր 354: Գինը 15 կ.:

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան, Օրջոնիկիձեի պող. 2:

Типография Издательства ЦК КП Армении, Ереван, пр. Орджоникидзе, 2.






Փորձեք լաբիրինթոսի մեկ կետով նշված սենյակից հասնել երկու կետով նշված սենյակը:

Թվագրված ութ պատկերներից ո՞րը պետք է դրվի չորրորդ շարքում:



ԳԻՆԸ 15 Կ. ԻՆԴԵՔՍ 77806




Վերջերս Երևանի մի շարք հին շենքերի վրա երևացին ցուցանակներ՝ «Պահպանվում է պետության կողմից»: Օր-օրի գեղեցկացող Երևանի բազմահարկ ու շքեղ նորակառույցների կողքին այս շենքերը գուցե անմիջապես չեն նկատվում կամ էլ գուցե մեր աչքն է սովորել նրանց: Բայց նրանք ունեն ճարտարապետական ուրույն արժեք և յուրահատուկ հմայք են տալիս մեր մայրաքաղաքին: Ձեր ուշադրությանն ենք ներկայացնում Աբովյան փողոցի «հնաբնակներից» երկուսին:



